# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## №: 10 • 1983

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

## ԱՄՊՐՈՊԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ

Լեռների վրա խռովություն է,
Խավարի խաղ է, դող է ու տենդ,
Վայրի հեղեղը կորցրել հունը
Եվ մոլեգնում է խռով ու խենթ:

Լեռների վրա ողբերգություն է,
Ողջը դարձել է հիմնահատակ,
Մեռած ծաղիկը լույսի աճյուն է,
Փշրված շանթը՝ սուրբ նահատակ:

Լեռների վրա արև ու ձյուն է,
Ձնծաղիկներ են քարատակի,
Երկինքը փառք է և օրհնություն է,
Կապույտ ոգին է նահատակի:

## ԱՐՏՈՒՅՏԸ

Գիշերը հողմ էր, գիշերը՝ մրրիկ,
Գիշերը դաշտով արհավիրքն անցավ,
Արտի մեջ քնած կապույտ մի ծաղիկ
Հենց քնի մեջ էլ տխուր մահացավ,
Արտույտն իր բնում՝ տաք, փոքրիկ մի սիրտ,
Տագնապ էր ու դող, մորմոք էր ու ցավ...

Բայց օրը նորից
Արտույտի ոսկե երգով լուսացավ:

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ՎԸՐԲԱՆ ՍՏԱՄԱՏՈՎ

(բուլղար գրող)




# ՀՍԿԱ ՕՆԻԿԸ



Չեմ հասկանում, ինչո՞ւ այս մեծահասակները սովորություն ունեն երեխաներին հարցնելու, թե ինչ պիտի դառնան, երբ մեծանան: Եվ անպայման լսել այն, ինչ ցանկանում են լսել. սպա, դաշնակահար, բժիշկ: Ժամանակին, երբ թուշս կսմթելով ինձ էլ էին այդ հարցը տալիս, ես համառորեն լռում էի: Բայց եթե հարկադրված լինեի պատասխանել և ճշմարտությունն ասել, առանց տատանվելու կասեի. ուզում եմ դառնալ Օնիկի նման: Միայն հսկա Օնիկի նման:

Պարզ է, որ ես թաքցնում էի բոլորից, մանավանդ մայրիկից, որովհետև գիտեի, թե ինչ պիտի ասեր. այդ դեպքում ինչո՞ւ ես դպրոց գնում, ինչո՞ւ եմ չարչարվում, քեզ համար գրքեր ու տետրեր գնում...

Որովհետև Օնիկը՝ մեր մանկության տարիների կատարելատիպը, բեռնակիր էր: Մինչև հիմա էլ հիշում եմ նրան. գրեթե երկու մետրանոց հսկա մի հայ մարդ էր: Ինչքան բարձր, գրեթե մի այդքան էլ լայն, միայն ջիլ ու մկաններից կազմված, նրա նման երկրորդը ես չեմ տեսել ողջ կյանքիս ընթացքում, ներառյալ և աշխարհի առաջնության համար մրցող ծանրորդներին, որոնց հեռուստատեսությունը ցույց է տալիս բոլորովին մոտիկից: Բայց այն ժամանակ հեռուստացույցի մասին մենք չէինք էլ լսել և մեր միակ զվարճալիքն այն էր, որ հավաքվում էինք նավամատույցում և դիտում, թե ինչպես է Օնիկը երկաթյա հաստ-հաստ ձողերը ճկում ուռենու ճյուղերի նման. թուխ էր, արծվաքիթ, խիտ, թանձր ու սև մազերով: Վզին ոսկե մի շղթա էր կրում, երևի հրաշքով փրկված թուրքական ջարդերից: Երևի դարձյալ այնտեղից էր վզին մնացել խորը սպին. ասում էին, երեխա ժամանակ հազիվ էր պրծել մորթվելուց:

Եվ ինչքան որ խոշոր ու հսկա էր, այդքան էլ հեզ ու խոնարհ էր գառան պես:

Ասացի, որ բեռնակիր էր Օնիկը, բայց նավահանգստի բեռնակիրներին քիչ էր խառնվում, միայն «սաստիկ քաղցի սեզոնին»: Սովորաբար ընկեր տղաների հետ արևկող էր անում շոգենավային ընկերության մուտքի առաջ, սանդուղքների վրա: Դրանք այն տարիներն էին, երբ մասնավոր ֆիրմաները, բանկերն ու առևտրական գրասենյակներր սունկերի նման աճում էին քաղաքում: Եվ իրենց փողերի պահպանությամբ մտահոգված՝ գործատերերր հաճախ էին Օնիկին կանչում՝ արտասահմանից գնված երկաթյա հսկա պահարանները տեղափոխելու:

Նման նորությունները՝ նավից նոր իջեցված հերթական չհրկիզվող պահարանի մասին, շատ արագ էին տարածվում քաղաքում և չանցած մի քանի րոպե, ֆիրմայի գրասենյակի դռան առաջ ահագին մարդ էր հավաքվում՝ տեսնելու այդ հրաշքը: Օնիկը երկար զննում էր փայլուն, պողպատե պահարանը, մտքում որոշելով, թե որտեղից և ինչպես բռնի, ապա դանդաղորեն ծամում, վերջացնում էր իր հացն ու հալվան կամ հացն ու ձի-

թապտուղը և ձեռքով նշան անում: Չորս ամրակազմ տղամարդիկ՝ ուսերին հաստ, զույգ պարաններ, լարումից գրեթե կապտած երեսներով, հազիվհազ, մի կերպ պոկում էին պահարանը գետնից: Ծանրոցն բարձրացնում ու տեղավորում էին Օնիկի թամբին: Մի պահ Օնիկը աղմուկով ու խորը շունչ էր առնում, հետո արտաշնչում ու նորից էր լցնում իր զորեղ, ահարկու թոքերը: Մի երկու անգամ թեթև կկզում էր, որպեսզի վարժվի ծանրությանը, որ երկու հարյուր, երբեմն երեք հարյուր կիլոգրամի էր հասնում, և լիակատար լռության մեջ, գրեթե փայտացած ոտքերով ճամփա էր ելնում աստիճաններով վեր...

Վերևում, տագնապած ու դողահար, նաև հիացած, նրան էր սպասում գործատերը և որպես վարձ մի հարյուրանոց էր փակցնում ճակատին:

Իսկ մենք, բազրիքներին կպած, կախարդվածի նման նայում էինք:

Օնիկը, թեև ճանաչված էր նավահանգստի բեռնակիրների մեջ, բայց ամեն գործի ձեռք չէր տալիս, գիտեր իր գինը: Եվ դա ոչ թե ծուլությունից էր, այլ որպեսզի բոլորի համար գործ լինի:

Նա տուն չուներ: Կնոջ և երեխաների հետ ապրում էր մի մեծ սնդուկի մեջ, որի վրա օտար լեզվով մակագրություններ կային: Մեկն այն սնդուկներից, որոնցով հսկա մեքենաներ էին փոխադրում դրսից, մեծ մասամբ շոգենավով: Միայն սնդուկի վերևը մի անցք էր բացել, այնքան, որ վառարանի խողովակը դուրս գա: Ուրիշ ոչինչ պետք չէր նրան: Խանգարում էր միայն այն, որ դուռը շատ նեղ էր, և նա ստիպված կռացած ու կողքանց էր ներս մտնում: Ինչքան մեզ հաջողվում էր աչք ածել փոքրիկ պատուհանից ներս, սնդուկում նեղվածք էր, բայց ուրախ: Երբեմն այնտեղից ուրախ ճիչեր էին լսվում, դա նշան էր, որ քիչ հետո տանտերը պիտի երևա շեմին, մի ձեռքով կնոջը բարձրացրած, ինչպես փոքրիկ երեխայի: Կինը ճչում, աղաղակում էր, խնդրում, որ բաց թողնի.

— Ամո՛թ է, մա՛րդ աստծո: Մարդիկ նայում են...

Իսկ վերակացուներն իրոք նայում էին: Մոայլ դժգոհում էին, որ նա ինքնագլուխ հաստատվել է այդ սնդուկում: Բայց չէին համարձակվում ձայն հանել, վախենում էին նրա ուժից:

Հիշում եմ. այդ վերակացուները, կամ «չավուշները», ինչպես անվանում էին նրանց, հաճախ ծաղրում էին գյուղերից եկած այն անգործ մարդկանց, ովքեր մի քանի լն ձեռք գցելու համար ինչ գործ ասես պատրաստ էին անել: Մի քանի հոգով հավաքվում ու նորեկի ուսերին պողպատե ձողերով լիքը մի տակառ էին դնում հարյուր, հարյուր հիսուն կիլոգրամ ծանրությամբ: Նորակոչիկ թեկնածուն այդ տակառն ուսին պետք է առանց օրորվելու, քայլեր հիսուն մետր առաջ և ետ: Հասկանալի է, նրանց մեծ մասը չէր դիմանում այդ բեռան տակ: Դեռ երկրորդ քայլը չարած, ծնկները ծալվում էին և գլորվում էր գետնին:

Իսկ վերակացուները քահ-քահ ծիծաղում էին: Մի անգամ պատահեց այնպես, որ Օնիկը խցկվեց հավաքված մարդկանց միջով, մոտեցավ, բռնեց չարչարողներից մեկի օձիքից ու լաթի պես թափ տալով մռնչաց.

— Թե պիտի գործ տաս մարդուն՝ տուր: Կամ էլ հանգիստ թող: Թե չէ ոսկորներդ կջարդեմ:

Հիշում եմ, այդ օրը չարչարանքի ենթարկված գյուղացին քնձռոտ, լողլող մարդ էր, թույլ, կախ ընկած լայն շալվարով, մեջքին կարմիր գոտի: Գոտի՞ն էր թույլ կապել, թե՞ ծանրությունից, շալվարն ընկավ ցած...

— Ոչինչ, ոչինչ, բան չկա,— մոտենալով ասաց Օնիկը:

Կռացավ, բարձրացրեց գյուղացուն և իր հսկա ձեռքերով սկսեց գոտին կապել, ինչպես կկապեն փոքրիկ երեխայի գոտին:

Նույն՝ 1938-ի ամռանը, առաջին անգամ Վառնայի նավահանգիստ ժամանեց սովետական «Սվանեթիա» առևտրանավը: Նավի ժամանման մասին, չգիտես որտեղից, բոլորն իմացել էին և չնայած ոստիկանների խիտ շղթային, ահագին ժողովուրդ էր հավաքվել: Բոլորը ուզում էին տեսնել սովետական առաջին նավը: Իսկ երբ մի շաբաթ անց «Սվանեթիան» ճամփա ելավ, հսկա Օնիկր քաշեց, հանեց կողքի գյուղացու կարմիր գոտին, մարդկանց հրմշտելով առաջ անցավ ու ալեպատնեշի պռնկին կանգնած, երկար թափահարեց շոգենավի ետևից:

Քիչ անց ոստիկանները ձերբակալեցին նրան: Մենք հեռվից նայում էինք ու զարմանում, թե ինչպես է, որ չի հակառակվում կամ դիմադրում: Օնիկը միայն փնչացնում էր, հոգոց հանում և բացատրում, որ կատակ է արել գյուղացու հետ, որ տեսնի, առանց գոտու շալվարն էլի՞ պիտի ընկնի, թե՞ ոչ: Շոգենավի ետևից էլ թափահարել է նրա համար, որ «Սվանեթիա»



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

անունը նրան հիշեցրել է Կովկասը, իր հայրենիքը։

Պարզ է, ստում էր, ուղղակի չհասկացողի տեղ էր դնում իրեն։ Բայց բաց թողեցին։ Գործատերերն ի՞նչ պիտի անեին առանց նրա։

Այդ տարիներին տղաներիս ամենասիրած խաղը օդում թղթե օդապարիկներ բաց թողնելն էր։ Ես ու մեր դասարանցի մի տղա գիսաստղի նման օդապարիկ էինք սարքել, երկար պոչով՝ հինգ մետր երկարությամբ... Երբ տղաներով հավաք-

ված առաջին անգամ բաց թողեցինք, այն օդ բարձրացավ մի քիչ թեք ու անվստահ, բայց հետո քամին քշեց տարավ ու թափով բարձրացրեց վեր, շատ վեր՝ ծովածոցի և այն ժամանակվա փոշոտ ու միհարկանի Վառնայի վրայով:

Թռչում էր, օրորվում, մերթ բարձրանում, մերթ իջնում, իսկ մենք ներքևում ցնծության մեջ էինք: Հանկարծ մեկը ձեռքիցս քաշեց, խլեց թելի ծայրը:

— Դուք դաս-պարապմունք չունե՞ք: Քանի՞ անգամ եմ ձեզ ասել:

Շուռ եկա, տեսնեմ Էֆթիմն է՝ թաղային, երրորդ ոստիկանատնից: Ամուր բռնել է ընկերոջս ականջից ու ոլորում է, իսկ տղան լաց է լինում, ավելի շատ բարկությունից, քան ցավից:

Նայեցի վեր:

Թելից պոկվելով՝ գիսաստղը, դողդողաց տերևի նման, թեքվեց կողքի և օրորվելով ընկավ ծովը:

— Գնանք ոստիկանատուն: Ես ձեզ ցույց կտամ:

Ինչքան խնդրեցինք, աղաչեցինք, թաղայինը բաց չթողեց: Որպես իրեղեն ապացույց, օդապարիկի պարանն անցկացրեց թևին ու առաջ ընկավ դեպի ոստիկանատուն: Ճանապարհին էլ մեկ- մեկ հրում էր մեզ, սպառնում, որ դեռ մեր ծնողներին էլ պիտի քարշ տա այնտեղ:

Պահեստներից մեկի մոտով թեքվելիս, մեկը ձայնեց նրա ետևից:

Առանց ետ նայելու էլ հասկացանք. հոկա Օնիկն էր: Նա ամեն կերպ ջանում էր համոզել, որ ոստիկանն ազատ արձակի մեզ: Ծանր, խոշոր քայլերով գալիս էր մեր ետևից ու խոսում ասես ինքն իր հետ.

— Ղալը մարդ դուրս եկար դու, Էվթիմ տղա: Ընկել ես խալխի երեխեքի ետևից, իսկ քոնոնք էնտեղ գամերն առած ողջ-ողջ չղջիկներ են մեխում, որ չորացնեն ու փողով ծախեն մարդկանց: Անցյալ օրը ջրաղացի մոտով անցնում եմ, տեսնեմ դուռը փակել են ու մի ամբողջ կույտ չոր տերև վառել, որպեսզի խեղդեն խեղճ կենդանիներին: Հիմա դու վեր ես կացել երեխեքի օդապարիկներն ես կտրատում...

Նա մեր ետևից եկավ մինչև նավահանգրստի ելքը և մեզ հետ մտավ պրիստավի գրասենյակը: Թաղայինը բացատրեց, որ իշխանությունններն արգելել են մանկական թռուցիկները, որովհետև, իբր գնում, խճճվում են հեռագրալարերին, խանգարում խոսակցություններին և մեծ վնաս պատճառում: Իսկ Օնիկն ամբողջ ընթացքում միայն լուռ լսում էր: Լուռ էր և այն ժամանակ, երբ պրիստավը հավատացնում էր մեզ, որ այդ թռուցիկները շատ վտանգավոր են պետության համար, կարող են ծառայել լրտեսելուն, զորանոցներն ու նավահանգիստները լուսանկարելուն, կարող էին դրանցով գաղտնի լուրեր ուղարկել յեռները փախած կոմունիստներին կամ նույնիսկ փոքրիկ ռումբեր գցել քաղաքի վրա... Հիմա գիտությունն այնքան է առաջ գնացել, որ, ի՞նչ իմանաս, մեկ էլ տեսար մեկը խաբեց երեխաներին ու... Այնպես որ, որպեսզի «կարգը չրխախտվի», նա մեզ տուգանում էր մեկից քսաններնգ լև՝ համաձայն օրենքի այսինչ կետի:

Մենք նայում էինք նրան ու ոչինչ չէինք հասկանում:

Այդ ժամանակ հոկա Օնիկն առաջ եկավ ու ասաց.

— Ինչքա՞ն...

— Դու մի՛ խառնվի,— լարվեց պրիստավը:

— Ինչքա՞ն, ասում եմ:

— Էս երեխեքը հո քոնը չե՞ն:

— Իմն են: Երկուսն էլ:

Եվ երկուսիս փոխարեն վճարելով, ականջներիցս բռնած դուրս տարավ ձնացնելով, թե իբր տանում է պատժելու:

Դուրսը քամին աղմկոտ շնկշնկում էր ծառերի ճյուղերի արանքում: Մի քիչ էլ քայլեցինք նրա հետ՝ ամոթահար ու երջանիկ, բայց և դժբախտ՝ կորցրած օդապարիկի համար: Հանկարծ հըսկա Օնիկը ծիծաղեց ու ինչ-որ բան ցույց տվեց երկնքում: Եվ մենք տեսանք, թե ինչպես հեռու մի անկյունում, միայնակ ու անորսալի մի օդապարիկ, դրոշի նման հանգիստ ծածանվում է նավամատույցի վրա: Գլուխներս բարձր պահած, սկսեցինք հետևել, թե ինչպես է այն ավելի ու ավելի վեր բարձրանում՝ տների, ծովի, ամբողջ ծովածոցի վրայով և ուղի բռնում դեպի ճերմակ ամպերով զարդարված հորիզոնը:

Ոչ, աշխարհում ոչ մի ոստիկան չէր կարող պոկել մեր օդապարիկների պարանները, ոչ էլ կարող էր ծովը նետել ողջերթի համար թափահարվող կարմիր գոտիները:

Բուլղարերենից թարգմ. Մ. ԹԵՐՁՅԱՆԸ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՍՈՍՅԱՑ ԱՆՏԱՌ

Մեր թվարկությունից շատ ու շատ դարեր առաջ, երբ դեռ չկար աշխարհի յոթ հրաշալիքներից և ոչ մեկը, Արարատյան դաշտում տնկվել է Սոսյաց անտառը, որ աշխարհի ամենահին արհեստական պուրակներից մեկն էր։

Քերթողահայր Մովսես Խորենացին գրել է, որ այդ անտառը տնկել է Հայկ Նահապետի որդի Արամանյակը։ Այս Արամանյակի որդի Արամայիսն էլ Սոսյաց անտառի կողքին հիմնում է Արմավիր քաղաքը։

Պատմիչը հաղորդում է, որ Հայաստանում սովոր էին գուշակություններ անել սոսի ծառերի տերևների սոսափյունով։ Այդ հեռավոր ժամանակներում գուշակություններ էին անում քրմերը՝ տարբեր աստվածների տաճարների սպասավորները։ Գուշակ քրմերին անվանում էին աստվածային պատգամը, աստծու պատասխանը մեկնող ու պարզաբանող և մարդկանց հասցնող։ Ենթադրենք մի զորապետ ուզում է իմանալ, թե հարևան տերության հետ սպասվելիք կռվի մեջ ինչ վախճան կունենա։ Քուրմը զորապետի այս հարցը ուղղում է աստծուն, որն իր անորոշ պատասխանը հայտնում է ծառերի սաղարթների սոսափյունով։ Այդ պատասխանը տերևների սոսափյունի օգնությամբ իբր կարող է



մեկնել միայն պատգամախոսը: Հասկանալի է, որ տերևների շնկշնկոցը նրան ոչինչ էլ չի հուշում և նա զորապետին մի անորոշ կամ հնարովի պատասխան է տալիս: Սակայն միշտ չէ, որ Սոսյաց անտառի գուշակ պատգամախոսները բոլոր հարցումներին պատահական պատասխաններ էին տալիս, որ կարող էր սխալ կամ պատահաբար ճիշտ լինել: Քրմերը տարիների ընթացքում հաշվումներ էին կատարում և համադրում որոշակի պարբերականությամբ կրկնվող երաշտները, կարկուտները, հեղեղումներր և բնական այլ երևույթներ: Այդպիսի դեպքերում նրանք հիմնականում ճիշտ պատասխաններ էին տալիս, որով օգնում էին արտերի ու այգիների մշակությանը: Այդ տեսակետից Սոսյաց անտառը կարելի է համարել Հայաստանի առաջին պարզունակ «օդերևութաբանական կայանը»:

Սոսյաց անտառը սրբազան վայր էր համարվում: Մովսես Խորենացին գրում է, որ այս անտառին է նվիրվել Արա Գեղեցիկի որդի Անուշավանը, որի պատճառով էլ ստացել է Սոսանվեր մականունը: Սա նշանակում է, որ Անուշավան Սոսանվերը եղել է քրմապետ, գուշակ պատգամախոս:

Հնում յուրաքանչյուր երկիր ունեցել է իր սրբազան ծառը: Հունաստանում այդպիսի ծառ է համարվել կաղնին, Հայաստանում՝ սոսին:

Ամենքդ էլ գիտեք, որ բոլոր ծառերի տերևներն էլ ինչ-որ չափով կարող են խշխշալ, շնկշնկալ, սվսվալ, փսփսալ, բայց մեր նախնիք մյուս ծառերի տերևների շարժումներն անիմաստ են համարել և սոսի բառից կազմել սոսափել բառը:

Սակայն չկարծեք, թե սոսին միայն գուշակության ծառ է եղել: Մեր նախնիները նրանից պատրաստում էին ընտիր իրեր: Սոսյաց անտառը սրբավայր լինելուց բացի, դաշտապաշտպան անտառաշերտի, երաշտի դեմ պատնեշի դեր է կատարել Արարատյան դաշտում:

Սոսյաց անտառը երկար չի գոյատևել: Այն ոչնչացվել է և այժմ դժվար է ասել, թե հայկական այդ գեղեցիկ ծառի հետնորդը ո՞րն է՝ արևելյան սոսի՞ն, թե՞ անհետ կորել է:

# ԾՆՆԴՈՑ ԱՆՏԱՌ

Այրարատ նահանգի Արշարունիք գավառում, Ախուրյան գետի աջ ափին, Բագարան բերդաքաղաքի մոտ, արհեստական մի անտառ է եղել: Մեր թվականությունից առաջ երրորդ դարի վերջերին այն տնկել է տվել հայոց Երվանդ թագավորը և կոչել Ծննդոց:

Ծննդոց անտառը հին Հայաստանի գեղեցիկ պուրակներից էր: Այնտեղ աճում էին ընտիր սոճիներ, կաղնիներ և ուրիշ-ուրիշ ծառատեսակներ: Երվանդը պարսպապատել է անտառը, լցրել այծյամներով, եղնիկներով, եղջերուներով, ցիռերով և վարազներով: Այս արգելանոցը արքայական պերճ որսազվարճարան էր:

Մովսես Խորենացին «Հայոց պատմություն» գրքում հավաստում է այս ամենը: Նա, որ ամեն ինչի մասին այնքան կարճառոտ է գրում, առանձին գլուխ է հատկացրել Ծննդոց անտառին: Տեսնո՞ւմ եք, Պատմահայրը հայատունկ անտառը համարել է հայ ժողովրդի պատմության մի էջը: Մեր նախնիք արհեստական ծառաստանը տաճար են անվանել, որովհե-

տև ծառատունկը դիտել են որպես կառուցում, շինարարություն: Այո, ամենամեծ շինարարությունը հայրենի բնությունը կանաչապատելն ու գեղազարդելն է:

Իսկ ինչո՞ւ է անտառը կոչվել Ծնընդոց: Եթե ժամանակակից հայերենով վերանվանենք, կստացվի ծնունդների անտառ: Իսկ ովքե՞ր էին ծնվում այնտեղ, ինչ կապ ունի անտառը ծննդի հետ: Մի՛ շտապեք: Մեր հեթանոս նախնիները ծննդոց կամ ծննդաբաշխ են ասել աստղագուշակներին, այսինքն այն քրմերին, որոնք աստղերի դիրքին նայելով գուշակում էին, թե ով որ աստղի տակ է ծնվել:

Այսպիսով Ծննդոց անունը վկայում է, որ այդ անտառը եղել է հեթանոսական այնպիսի գուշակավայր, ինչպիսին Սոսյաց անտառն էր:

Հայտնի է, որ երկինքն ավելի պարզ է երևում և աստղերն ավելի տեսանելի են լինում, երբ նրան նայում ես ջրհորի միջից: Նույնը դուք կարող եք փորձել թավուտ անտառի մեջ: Ծառերի սաղարթների արանքից աստղերն ավելի լուսավոր են դառնում: Դա նկատում էին նաև հեթանոս աստղագուշակ քրմերը: Հենց որ Բագարան բերդաքաղաքում կամ շրջակա գյուղերից մեկում երեխա էր ծնվում, աստղագուշակները մտնում էին Ծննդոց անտառ, ծառերի արանքից նայում երկնքին, գուշակում իբր, թե որ աստղի տակ է ծնվել նա, ինչ է սպասվում նրան և այլն, և այլն:

Չկարծեք, թե դրանով ամեն ինչ վերջանում էր: Երբ լրանում էր երեխայի մեկ տարին, ծնողներրը նրան տանում էին Ծընընդոց անտառ, մի քանի րոպե պահում այն ծառի մոտ, որի մոտից քուրմը գուշակել էր նրա ապագան: Հասկանալի է, որ արարողությունն ուղեկցվում էր աստղագուշակին առատ նվերներ տալով:

Ծննդոց անտառը պատվար է եղել նաև մորեխի դեմ: Արտերն ու այգիները ոչնչացնող մորեխի ամպերը չէին կարողանում կտրել-անցնել Ծննոց անտառը և ուժասպառ էին լինում՝ զարնվելով ծառերի բներին:

Ամենևին զարմանալի չէ, որ ո՛չ Սոսյաց, ո՛չ էլ Ծննդոց անտառներից հետք չի մնացել: Չորրորդ դարի սկզբին, երբ Հայաստանում հաստատվում էր քրիստոնեությունը, նոր կրոնի քարոզիչները ոչնչացրին ոչ միայն հեթանոսական տաճարները, այլև արմատախիլ արեցին հեթանոսական գուշակարան-պուրակները: Այդ պատճառով էլ մեզ է հասել Ծննդոց անտառի անունը:

# ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆՈՒԹՅՈ՞ՒՆ, ԹԵ՞ ԻՆՔՆԱԳԼԽՈՒԹՅՈՒՆ

Կարդալով ամսագրում տպագրված այս վերնագրով հոդվածը, ակամա հիշեցի իմ մանկությունը և պատանեկությունը:

Ես, ինչպես նաև մեր տան բոլոր երեխաները, պարտավոր էինք շարժվել մեր ծնողների ասածի պես, ասածը ճիշտ լիներ թե սխալ, քննարկման ենթակա չէր, խախտողը պատժվում էր ամենայն խստությամբ:

Օրինակ, արտը պարարտացնելու համար մոխիրը շալակով պետք է փոխադրեինք մեկ կիլոմետր, մինչդեռ կային փոխադրման միջոցներ: Այդպես տարեկան 4—5 տոննա մոխիր էինք 5—15 տարեկան երեխաներս կրում, տեղափոխում մեկ կիլոմետր հեռու:

Ծնողներիս այդ վարմունքի պատճառով ես շատ երկչոտ էի, ուրիշների հետ ազատ խոսել նույնպես վախենում էի:

Ութ տարեկան էի, երբ մի անգամ մայրս ինձ ուղարկեց շուկա մածուն ծախելու և պատվիրեց, որ սկզբում դրամը վերցնեմ, հետո մածունը տամ: Առաջին հաճախորդի հետ այդպես էլ վարվեցի, սկզբում պահանջեցի դրամը, սակայն հաճախորդը հաշվի չառավ իմ պահանջը և մածունը խմելուց հետո միայն դրամը տվեց, ոչ թե տվեց՝ շպրտեց: Այդ վիրա-



վորանքը մինչև օրս չեմ կարողանում մոռանալ: Ծնողներիս պահանջներից առաջացած նման ամոթալի դեպքերը բազմաթիվ են:

Ներկայումս հիսունին մոտ մարդ եմ, իսկ ծնողներս ութսունին մոտ են: Նրանք այժմ էլ աշխատում են «ղեկավարել» ինձ, բայց ես շարժվում եմ իմ խելքով, սակայն նրանց ասածին չեմ առարկում, չեմ վիճում հետները, պատասխան չեմ տալիս, որովհետև փոքր հասակում եթե ինձ պատժում էին ծեծով, այժմ պատժում են՝ խռովելով:

**Տ.Ս.**

Մարտունի

Ամառային արձակուրդի օրերն էին: Փոխադրվել էի 3-րդ դասարան: Փոստատարը բերեց «Հայաստանի աշխատավորուհու» հերթական համարը: Անմիջապես բացեցի սիրածս էջը՝ խոհանոցը, և ա՜յ քեզ ուրախություն՝ «Գնչուական տորթ»:

Առանց երկար մտածելու 15 րոպեում խմորը պատրաստեցի, լցրեցի ջեռոցի թասի մեջ և 45 րոպե եփեցի:

Երբ ուզեցի հանել, տեսա, որ կպել է թասին: Շատ չարչարվեցի, արդյունքի չհասա: Ուստի դանակով մաքրեցի թասը, եփածս թափեցի:

Երեկոյան տուն եկավ մայրիկս և իմանալով ինքնագլուխ արարքս՝ բարկացավ, բայց քանի որ խոստացա այլևս ինքնագլուխ բաներ չանել, ինձ ներեց: Իսկ եթե ինքնագլուխ արարքս լավ արդյունք տար, իհարկե, մայրիկս գոհ կմնար և կգովեր ինձ:

Ուրեմն ի՞նչ, փորձենք ինքնուրույն քայլ անե՞լ, թե՞ անհաջողությունից խուսափելու համար ոչինչ ինքնուրույն չնախաձեռնենք:

**ԻՍԿՈՒՀԻ ՄԿՐՏՉՅԱՆ**

**Թալին №1 միջն. դպրոցի 8-րդ դաս.**






**ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ**

## ԵՍ ՈՒ ՄԱՅՐԻԿՍ ՄԵԿՏԵՂ

**Ես ու մայրիկս մեկտեղ**
**Հագցրեցինք քույրիկին:**
**Ես ու մայրիկս մեկտեղ**
**Ճաշ եփեցինք հայրիկին:**
**Երբ ավելի մեծանամ,**
**Մենակ կանեմ ամեն ինչ:**
**Մայրիկը շա՜տ է հոգնած,**
**Հանգստանա թող մի քիչ:**

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



## ՄԻՀՐ—ԱՐԵՎ, ՄԵՐՈՒԺԱՆ—ԱՐԵՎԱԶՈՐ

«Արարատյան դաշտի առավոտը» թեման անցնելիս, խոսել եմ «Սամվել» վեպի մասին, ասելով, որ Մերուժան Արծրունին եղել է դավաճան... Ու տղայի սրտին կպել է: Մտովի դժգոհել է ծնողներից՝ էլ մի ուրիշ անուն չկա՞ր, որ ինձ այդ դավաճանի անունով եք կոչել:

Մեկ ուրիշը՝ Սահակը, ձեռք է բարձրացնում, թե.

— Որտեղի՞ց է ծագել և ի՞նչ է նշանակում իմ անունը...

Ես բացատրում եմ, որ Սահակ անունը հրեական ծագում ունի, առաջացել է Իսահակ ձևից, բայց վաղուց հայացվել ու հայերիս մոտ տարածված անուն է. Սահակ Պարթև... Սահակ Բագրատունի...

Աշակերտները հերթով ստուգաբանության են ներկայացնում իրենց անունները: Մերուժանը լուռ է: Քրտնելու չափ շիկացած տղան չի ուզում, որ իր անվանը մոտենանք ու կրկնենք դավաճան Մերուժանի անունը:

Հակառակի պես կողքի տղան մեջ է քաշում նրան.

— Բա Մերուժա՞ն...

Մերուժանը գլուխը կախել ու մի բուռ է դարձել:

— Մերուժան անունը,— ասում եմ ես, — պարսկական ծագում ունի, միհր նշանակում է արև, Մերուժան՝ արևազոր... Այստեղից է ծագում նաև Մհեր անունը...

— Ըըըը՜...— տղայի աչքերը վառվըռում են հրճվանքով,— Մհե՜ր...

Եվ այլևս դավաճան Մերուժան Արծրունու անունը տալու հարկ չեղավ:

## ԱՆՈՒՇ ԲԱՌԸ

Ես աշակերտներին չեմ ասում՝ խուսափեցեք բարբառից:

Ես աշակերտներին ասում եմ՝ ուշադիր եղեք բարբառի նկատմամբ:

Այս անգամ տղան դասը պատմելիս օգտագործում է առտուն բառը:

Դասարանում տարակուսանքի փոթկոց է լսվում: Տղան անմիջապես զգում է իր սխալն ու տագնապ հարուցած բառը ըշտապում է փոխարինել գրական հոմանիշով՝ վաղը, էգուց, առավոտյան... Ու ինձ է նայում:

— Առտուն բառի առ-ը գրաբարյան նախդիր է, տուն-ը՝ տիվ—օր, ցերեկ բառն է...— ասում եմ ես:

— Առտուն,— զղջումով եռ է դառնում տղան,— առտուն... Առտուն-ը վաղ-

ից էլ, էգուց-ից էլ գեղեցիկ բառ է, առտունը, անուշ բառ է:

Բարբառների մեջ էլ շատ անուշ բառեր կան:

## ԷՔՍԿՈՒՐՍԻԱՅԻՑ ՎԵՐԱԴԱՌՆԱԼԻՍ

Աշակերտներիս հետ վերադառնում էի ծրագրով նախատեսված էքսկուրսիայից: Վերադարձի համար ընտրած ճանապարհն անցնում էր վաղեմի գերեզմանատան մոտով:

Հին ու մամռած շիրմաքարերի վրա կըռացած տղան հեգում է. «Այս է տապան Տէր Գրիգորի ծնեալ է 1808 ամի ի Քիլլի օծեալ է ի Կարին վախճան 1895 ամի թաղեալ է Ծտեա»:

Ես թարգմանում եմ տապանագրի գրաբարն ու լսածիս չափ պատմում նրա մասին:

— Բա այս քարե ձիերն ու խոյե՞րը...

— Ասում են, դրանք շատ հին են...

Այդ ձիերն ու խոյերը գալիս են Բագրատունյաց թագավորության ու մոնղոլների արշավանքի ժամանակներից: Ձիերը զինվորների նշան են, խոյերը՝ հովիվների...

Եվ էլի հարցեր ու պատմություններ...,

Ապա ամփոփում ենք, թե ինչ սովորեցինք այս մամռոտած քարերից:

— Սովորեցինք, որ մեր գյուղացիները Ջավախք են եկել Բասենի Քյոլլի գյուղից 1829 թվականին... Գյուղի անունը ոչ թե Իքիլլի է, ինչպես սխալմամբ ասում են տարեցներից ոմանք, այլ Քիլլի, որը արտասանվում է Քյոլլի, ի-ն գրաբարյան նախդիր է «մեջ» կապի իմաստով...

— Սովորեցինք, որ մեր գյուղը հին բնակավայր է, Ծտեա անվամբ նշված է միջնադարի հայ-վրացական քարտեզների վրա... Մենք սովորեցինք, որ մեր գյուղի Հեշտիա անունը ստացվել է տապանագրի սխալ ընթերցումից՝ «Թաղեալ է Ծտեա» արտահայտության մեջ «է» օժանդակ բայը կարդացել են Ծտեա բառի հետ ու ստացվել է Էշտեա-Էշտեա-Հեշտեա....

Ապա Մերուժանն է խոսում.

— Մեր գյուղի գերեզմանոցում չեն թաղվել 212 մարդ, որոնք զոհվել են Մեծ Հայրենականում...

Սովորեցինք մի քիչ էլ գրաբար, ուկերքս՝ նշանակում է ոսկորներ, այր-տղամարդ, առիւծ-առյուծ... Վիշապ հողոյս բացեալ զբերան... ով մահ առիւծ առեր դու զիս... սովորեցինք նաև... որ անգամ տապանաքարերից սովորելու բան կա:

Եվ հետո երբ խոսք եղավ ու ես պատմեցի Թբիլիսիի Խոջիվանքի պանթեոնի ու Երևանի Կոմիտասի անվան զբոսայգում թաղված հայ մեծերի մասին, սնաչ տղան ձեռք բարձրացրեց.

— Իսկ որտե՞ղ է թաղված Նարեկացին...

— Նարեկա վանքի գավիթում... 1967 թվականին նրա գերեզմանին դրվել է տապանագրով գեղեցիկ շիրմաքար...— ասացի ես:

Բավական անց, երբ մենք ուրիշ հարցի վրա էինք խոսում, սնաչ տղան ինքն իրեն օրորեց գլուխն ու արտաբերեց.

— Իսկ խնամող կա՞ նրա գերեզմանը...

Սնաչ տղան մտովի Նարեկացու շիրմի մոտ էր:

## Ի՞ՆՉ ԱՐԺԵ ՀԱՑԻ ՄԵԿ ԿԻԼՈԳՐԱՄԸ

Վաղ առավոտ է, դպրոց եմ գնում: Ինձանից առաջ քայլում են երեք-չորս աշակերտ: Ցանկապատի տակ տեսնում եմ ընկած հացի պատառը, որի կողքով աշակերտները անտարբեր անցան:

Մեր հարևան, հենակներով քայլ Լևոն լիներ, այդպես չէր անցնի:

Դժվարությամբ կկռանար, կվերցներ, կդներ ցանկապատի վրա: Ու ինքն իրեն կքրթմնջար.

— Մեղա՜, մեղա՜... Հացն էլ գցե՞ն գետին... Մեղք է... Հացն հանապազօրյա: Աստծու տվածն է... Մի՛ տրորեք, վերցրեք, դրե՛ք բարձր ու մաքուր տեղ, թող հավք ու թռչունների բաժին լինի...

Լևոյի ասածի պես վերցնում եմ հացի պատառը, դնում քարե ցանկապատի վրա:

Մտնում եմ դասարան, բարևելուց հետո հարցնում եմ.

— Ի՞նչ արժե ջինս շալվարը...

— Նայած որը. խանութում՝ յոթանասունչորս ռուբլի վաթսուն կոպեկ, ձեռք վրա՝ 200 ռուբլի...

— Ի՞նչ արժե մագնիտաֆոնը.

— Նայած... Ճապոնականը երկու հազար ռուբլով էլ չեն տա,— իրար լրացնելով խոսում են աղջիկ ու տղա:

Աշակերտները լավ գիտեն, թե ինչ արժեն իտալական ակնոցը, կաշվե բաճկոնը...

— Ինչքա՞ն է կշռում մեկ հացն ու ի՞նչ արժե հացի կիլոգրամը,— հարցնում եմ ես:

Դասարանը լռում է:

Դասարանում գերազանցիկներ կան, լավագույն աշակերտներ կան... «4»-եր ու «5»-եր ենք նշանակում... հացի գինը չիմացող աշակերտներին:

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ




Սկզբում տարվեց թատրոնով: Իհարկե, ընտանեկան: Մորուք էր կպցնում՝ ծերուկ է, պենսնե էր դնում՝ ակնաբույժ է, սաղավարտ էր կրում՝ տանկիստ է, իսկ նավաստու գլխարկը ստեղծում էր ծովայինի պատրանք:

Հետո լույս ընծայեց մանկական հանդես: Դարձյալ ընտանեկան:

Ընտանեկան թատրոնի երեկվա դերասանն այսօր սովետական մանկական դրամատուրգիայի հիմնադիրն է: Միայն Մոսկվայի կենտրոնական մանկական թատրոնում նրա «Սոմբրերո» պիեսը ներկայացվել է հազար անգամ...

Ձեռագիր հանդեսի երեկվա հեղինակն ու խմբագիրն այսօր համամիութենական «Պիոներ» ամսագրի խմբագրական կոլեգիայի երկարամյա անդամն է, «Ֆիտիլ» երգիծական կինոհանդեսի գլխավոր խմբագիրը:

Երեկվա սկսնակ բանաստեղծ-երգահանն այսօր ՍՍՀՄ պետական հիմնի հեղինակներից է:

Մեծ է Միխալկովի հետաքրքրությունների շրջանակը՝ բանաստեղծ, դրամատուրգ, առակագիր, հրապարակախոս: Մեծ է և ճանաչումը՝ լենինյան մրցանակի դափնեկիր, սոցիալիստական աշխատանքի հերոս, ակադեմիկոս...

Այո՛, Սերգեյ Միխալկովը մրցանակներ ու պարգևներ շատ ունի՝ հայրենական և արտասահմանյան: Դրանցից մեկն ուզում ենք առանձնապես շեշտել: Բայց նախ հիշենք Ալեքսանդր Ֆադեևի բնութագրումը. «Միխալկովի բոլոր բանաստեղծությունները ջերմացած են տաք, լուրջ և անխարդախ հումորով, ներծծված մարդկային ջահելության լույսով»: Այս բառերն ասվել են 1938 թվականին, երբ բանաստեղծը 25 տարեկան էր:

Եվ ահա քառասուն տարի անց արժանի պարգև՝ Ժպիտի միջազգային շքանշան (Վարշավա, 1978 թ.): Ժպիտ, որ երգի նման օգնում է կառուցել և ապրել:

Ահա այսպիսին է Սերգեյ Միխալկովը, որ դեռ երեսուն տարի հետո է բոլորելու իր հարյուրամյակը: Մինչ այդ դեռ Միխալկովյան որքա՜ն գրքեր լույս կտեսնեն, երբ այժմ մեր հայրենիքում և արտասահմանյան բազմաթիվ լեզուներով արդեն լույս են տեսել՝ 180 միլիոն գիրք:

ՌՈԲԵՐՏ ԲԱԲԼՈՅԱՆ

# Ե՞րբ պիտի գաս, այ գարուն



Ե՞րբ պիտի գաս, ա՜յ գարուն,
Բերես գույներ վառվռուն,
Շունչ տաս ցող ու շաղիկին
Եվ տաք բուրմունք՝ մայր հողին:

Աստղեր շաղ տաս երկնքում,
Փայլ՝ արևին ու լուսնին,
Որ ծիտիկն էլ հիացած
Երգեր հյուսի քո մասին:

Եվ խմբերգը ծիտիկյան
Գիշեր-ցերեկ քեզ փառք տա.
Եվ բողբոջը քուն մտած
Այդ երգերից արթնանա:

Ե՞րբ պիտի գաս, ա՜յ գարուն,
Հագած շորեր զարդարուն,
Անհամբեր ենք, անհամբեր,
Ե՜կ և անուշ օրեր բեր:

ՆՈՒՆԵ ԳԵՎՈՐԳՅԱՆ
Երևանի № 92 միջն. դպրոց, 6-րդ դաս.

# Մեր դռան առջև

Արևը վեր կացավ, ժպտաց
Մեր դռան առջև,
Ծիտիկը վեր թռավ, երգեց
Մեր դռան առջև,
Քույրիկս կանգնեց մեր դռան առջև,
Ծաղիկ բացվեց մեր դռան առջև,
Գարունը ձլեց, գարունը ծաղկեց
Մեր դռան առջև:

ՆԱԻՐԱ ՍԻՄՈՆՅԱՆ
Վրաց. ՍՍՀ, Բոգդանովկայի շրջան, Հեր-
տիայի դպրոց, 5-րդ դասարան

ԱԼԵՆԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ
Սիսիանի № 3 դպրոցի 4-րդ դաս.

ՄԵԼԱՆՅԱ ՊՈՂՈՍՅԱՆ
«ԲՆԱՆԿԱՐ»





# ՀԱՅԵՐԸ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԵՏ «ԴՈՒ»-ՈՎ ԵՆ ԽՈՍՈՒՄ

Վահագնին հյուրի միանգամից գնահատող աչքում՝ կիրթ, հավաք, իր ուրույն դիմագիծն ունեցող հին գյուղ է: Ունի նաև իր քնորոշ «թաքուն» ուրախություններն ու հոգսերը, որոնք օր օրի փոխվում են: Այստեղ հողը պաշտել են ու նաև նրանից ակնկալել: Գուրգուրանքով սերմը պահ են տվել, քրտինք թափել ու հուսացել, որ մեկը հազար կդառնա: Բայց հիմա գյուղի մեծերը ամպած են:

— Սա գյուղ չի, գյուղատեղի է:

Գյուղից գնում են: Ցավ է, բայց մի ուրիշ մտատանջություն էլ կա. դպրոցահասակ երեխաներից շատերը ապրելով գյուղում... մոռանում են գյուղը:

Աշխարհագրության ուսուցիչ ընկեր Զաքարյանի պատմելով 1965 թվականին որոշվում է միջդասարանային դահուկային մրցումներ անցկացնել: Ֆիզկուլտուրայի խորհրդում միջոցառումների քննարկման ժամանակ աշակերտներից մեկը հայտնում է, որ իր հորեղբոր բակում մի մեծ դահուկ կա, որը սովորական դահուկներից մեծ է, և տակի մասում էլ քարեր են ամրացված...

«Դահուկ» կարծածը դուրս եկավ կամ-կալսիչ:

Հիմա մեքենան է ցանում, հնձում, կալսում, բայց ինչու՞ մոռանալ կամ ու կալսիչը, մոռանալ, որ գութան է եղել աշխարհում: Գյուղում ժամանակակից սարքավորումներով հացի մեծ գործարան կա: Շատ լավ է, բայց մոռանա՞նք փուռը, հացի տաշտը, տատի խմորոտ ու հացեհամ ձեռքերը...

Ու ընկեր Զաքարյանը աշակերտների հետ որոշում է թանգարան ստեղծել:

Կամ-կալսիչը դարձավ հայրենագիտական թանգարանի առաջին ցուցանմուշը: Աշակերտները կազմեցին թանգարանային խորհուրդ: Հին դպրոցի ազատ սենյակներից մեկը մաքրեցին, կարգի գցեցին ու միջանցքում մի խոշորատառ հայտարարություն փակցրեցին. «Ով ինչ հնագիտական ցուցանմուշ կարող է, թող ներկայացնի թանգարանի խորհրդին»: Հաջորդ օրը գործածություններից դուրս եկած շատ իրեր ներկայացրին թանգարան: Այսօր էլ թանգարանային խորհրդի «դատին» են հանձնում մեծաթիվ ցուցանմուշներ՝ դաշույններ, սրեր, մետաղյա և թիթեղյա դրամներ, արծաթյա գոտիներ, բրոնզե հավանգ՝ իր ծեծիչով:



Գյուղի ներքևում տարածված «Տախտ հողերում» շինարարական աշխատանքներ են կատարվում: Ո՞վ կմտածեր, թե ինչեր կգտնըվեն այնտեղ: Հայտնաբերվեցին... մ. թ. ա. 8—7-րդ դարերում կավից պատրաստված կճուճներ, կաթսա, ափսեներ, թասեր, կով կթելու ամաններ: Գտնվեց նաև մի բրոնզե գոտի՝ յուրօրինակ զարդանախշերով: Հետո թանգարան բերվեցին նաև հնագույն ժամանակաշրջանի սանդ, ծեծիչ, երկանք, աղորիքներ, որոնք դրեցին խնամքով պատրաստված պատվանդանին:

Հայաստան այցելած հյուրերից մեկը գրել է. «Հայաստանում ձեռքդ մեկնես՝ կըհասնես հազարամյակների հնության: Այստեղ դուք կարող եք ձեր մատներով շոշափել ուրարտական թագավորների սեպագիր արձանագրությունները, պոպոք ջարդել տասհազարամյա հնության քարե կացնով:

Հայերը պատմության հետ «դու»-ով են խոսում»:

Այդպես է: Մտքովդ անցավ՝ թանգարանում կարող ես ձեռքդ վերցնել անցած-հեռացած ժամանակների ոչխար խուզելու մկրատ, թե քեզ չզսպեն աշակերտների

անհանգստացած հայացքները՝ կարող ես ուղղ գցել հովվի մորթե պայուսակը կամ քեզ պայտար պատկերացնել ու վերցնել հին, գործածությունից դուրս եկած գործիքները: Էլ չենք խոսում Գուգարաց աշխարհի ճախարակի, հորագործհաստոցի մասերի, սանդերքի, սանրերի ու կտավագործության այլ առարկաների մասին:

Այս սրահում կախված է նաև Գուգարաց երկրի տղամարդու հագուստ՝ պարզ և ամուր, հարմար:

Թանգարանի երկրորդ սենյակի թավշապատ ցուցատախտակների նյութերն ու լուսանկարները պատմում են Հայրենական մեծ պատերազմում զոհված վահագնեցիների մասին: 181 մարդ: Պայծառ սերեր ու կարոտներ ունեին, նվիրված էին հայրենիքին: Իսկ հայրենիքը, ինչպես երգում է ասված, երևի թե սկսվում է հենց քո այբբենարանից ու քո բակից:

... Ես հավատում եմ, որ Վահագնին գյուղատեղի չի դառնա: Հավատում եմ Վահագնիի պիոներների ու դպրոցականների նվիրվածությանը: Գիտեմ, որ չեն մոռանա, որ հայրենիքը սկըսվում է հարազատ գյուղից ու հարկ եղած դեպքում ամեն մեկն էլ հայ գրողի պես կարող է ասել. «Եթե կրկնվեր ջրհեղեղի մասին լեգենդը, ես, որպես հայ, կկարողանայի երկրի վրա վերակենդանացնել երկրագործական և խաշնարածական մեծ կուլտուրան»: Այսինքն՝ կանեք, որ ճանաչում եք ձեր գյուղը և որ հարուստ եք հիշողությամբ: Եվ դա կհնչի ինչպես երդում՝ կրակոտ ու սիրով լի:

**ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ**



ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

# ԱՐՄԱՏՆԵՐԸ

**Ես տերևիկ նկարեցի,**
**Տերևիկը ճյուղին հիշեց,**
**Ասաց. «Մենակ մի՛ թողնի ինձ,**
**Ճյո՛ւղ նկարիր մի բարձրուղեշ»:**
**Ճյուղն էլ եղավ, արի ու տես,**
**Ճյուղն էլ ուրիշ ճյուղեր ուզեց,**
**Ես ճյուղերն էլ նկարեցի,**
**Եվ՝ կարևորը հիշեցի.**
**Առանց բնի ծա՞ռ է լինում,**
**Նկարեցի բունը՝ սիրուն:**
**Միտս եկան արմատները,**
**Արմատները՝ մեր պապերը,**
**Արմատները՝ խո՛ր, խառնիխուռն,**
**Ծառն են պահում՝ ոտքից գլուխ...**

ՆԿ. ՍՈՒՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գայլը որս չէր ճարել և, ոտքերը հազիվ քարշ տալով, մտավ գյուղ, հույսով, թե այստեղ մի բան կգտնի, քաղցը կհագեցնի։ Մութն ընկել էր, գյուղի փողոցներում մարդ չկար։ Գաղտագողի անցավ մի քանի տների առջևով, բայց էդ օրն աստված խռովել էր նրանից, բախտը չբերեց, ոչինչ չգտավ։

Մի դռնով էլ անցնում էր, մեկ էլ, ը՛հը, հանդիպեց կապած շանը, որի առաջ թափված էր մսալի ոսկորների մի կույտ։

— Բարև՛, ցեղակի՛ց,— ասաց գայլը։

— Օ՜, բարո՛վ եկար, հազա՛ր բարի,— ասաց շունը,— համեցիր, ցեղակի՛ց, մասնակի՛ց եղիր իմ ճոխ սեղանին։

— Է՜, գա՛յլ ախպեր,— պատասխանում է շունը,— դու ինչ ուտում ես, գողանովի է։ Քեզ հալածում են հովիվները, նրանց շները, նախրապանն ու խոզարածը, որովհետև մեծ մասամբ նրանցից ես հափշտակում... գող սիրտը դող։ Դու ինչպե՞ս կարող ես չաղանալ։

— Էդ ճիշտ ես ասում,— հաստատում է գայլը,— մի՞թե հնար չկա, որ ես էլ քեզ պես բախտավոր լինեմ։

— Կա՛, ինչու՞ չէ,— պատասխանում է շունը։— Ես պաշտպանում եմ իմ տիրոջ տունը, դուռը, նրա ապրուստը գողերից ու ավազակներից։ Ճիշտ է, իմ տերն ինձ կապած է պահում, բայց լավ է պահում։ Ամեն օր ինձ համար բերում են իրենց ճաշի

# ՍՈՎԱԾ ԳԱՅԼՆ ՈՒ ԿՈՒՇՏ ՇՈՒՆԸ

(Հայկական ժողովրդական հեքիաթ) Մշակեց՝ ՄՈՒՇԵՂ ՀԱԿՈԲՅԱՆԸ

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵ

Գայլն էլ հենց էդ հրավերին էր սպասում։ Նստեց կապած շան քնի առաջ, նրա հետ խժռեց մսալի ոսկորները։

— Լսի՛ր, բարեկա՛մ,— ասաց գայլը,— ես սարերում, անտառներում, դաշտերում ու ձորերում նապաստակ եմ որսում, եղնիկ, վայրի ոչխար կամ էծ, հանդերում մոլորված, հոտից անջատված ոչխար, գառ կամ տիրոջից խռոված էշ, խոզ կամ այլ անասուն, հոշոտում եմ, վայելում, խմում եմ աղբյուրների սառնորակ ջուրը, շնչում եմ սարերի մաքուր օդն ու թավալվում ծաղիկների մեջ, բայց տես, թե որքան նիհար եմ, միայն ոսկորներս են։ Իսկ դու կապած տեղդ չաղ ես, էդ ինչո՞վ բացատրել, ցեղակից։

մնացորդները, ինձ համար լափ են եփում ու բերում, հաց էլ են տալիս։ Մի խոսքով՝ ինչ իրենք են ուտում, ինձ էլ չեն մոռանում, բերում են իմ բաժինը։

— Օ՜խ, օ՜խ, օ՜խ,— ասաց գայլը՝ փրնչինքը թափելով։— Երանի՛ քեզ։

— Ես ոչ ոքից չեմ վախենում,— շարունակում է շունը, — ընդհակառակը, ուրիշներն են ինձնից վախենում։ Ուտում եմ հանգիստ, առանց շտապելու։ Երբ կշտանում եմ, մնացածը թողնում եմ՝ հետո եմ ուտում։ Հանգիստ պառկում եմ ցերեկը հով բնիս մեջ, գիշերը՝ բնիս առաջ, հանգստանում, աչքերս կիսախուփ՝ քնում եմ։ Կիսախուփ եմ քնում, որպեսզի ըզգույշ լինեմ, տիրոջս լավ ծառայեմ...

Եթե ուզում ես, ընկեր դարձիր, ես տիրոջս կասեմ, քեզ էլ կապի ինձ մոտ, միասին հսկենք ու պաշտպանենք նրա ինչքն ու ունեցվածքը:

— Օ՛, ինչքան բարի ես, շուն ախպեր: Ես հավիտյան երախտապարտ կլինեմ քեզ, հավատարիմ ընկերդ կլինեմ,— համաձայնում է գայլը:

Եվ նա նստում է շան կողքին, ամբողջ գիշերը զրուցում են:

Լուսադեմին, գայլն արդեն շատ նստելուց ձանձրացած, հիշում է, որ նապաստակները շուտ են արթնանում ու արոտի դուրս գալիս: Է՛, ի՞նչ կարիք կա ընկնել շան խելքին, նրան ընկեր դառնալ, նրա հետ կապվել, զրկվել ազատությունից, սարերից, անտառներից, նապաստակներից, եղնիկներից...



ԱՅԱՆԻ

— Օ՛, շու՛ն,— ասաց նա,— ես էսքան համբերություն չունեմ մի տեղ նստելու: Քեզ լինեն քո տիրոջ տված լափն էլ, ոսկորներն էլ, ճաշի մնացորդներն էլ... Ինձ սպասում են սարերը, ձորերը, դաշտերը ու անտառները, ինձ սպասում են հովիվները ու շները: Եթե օրերով էլ սոված մնամ, իմ մի սոված, բայց ազատ օրը չեմ փոխի քո շղթայված հարյուր կուշտ օրի հետ: Դու ստրուկ մնա, իսկ ես՝ ազատ: Մնաս բարով, ես գնացի:

Մի քանի ոստյունով դուրս եկավ գյուղից ու, հայդե, դեպի իր սարերը:



# Ծիտիկի երազը

ՎԱՐԱԶԴԱՏ ՄԵԼՔՈՆԻ

Աղվամազիկ
Ու կտուտիկ
Մի խենթ ծիտիկ
Երազի մեջ
Թռվռում էր
Ու պար գալիս,
Թևին տալիս:
Ցատկում էր դես,
Ցատկում էր դեն,
Խաղում այդպես
Աշխույժ ու ժիր,
Ճյուղերի հետ
Կռիվ տալիս...
Ծիվ-ծի՛վ, ծիվ-ծի՛վ...

2

Այնքան երգեց,
Այնքան պարեց,
Թևիկներով աղմուկ արեց,
Տոտիկներով փոշի հանեց,
Նրա անզուսպ ցատկումներից
Քամի ելավ,
Ծառն օրորվեց,
Ճյուղը ճռճվեց
Ու ծիտիկին
Վար գլորեց...
Աչքը բացեց: Եվ ի՞նչ տեսնի,
Ո՛չ ամպ, ո՛չ զամպ,
Ինքը այնպես
Լավ էր քնել
Դատարկ բնում ծիծեռնակի,
Եվ արևը
Լավն էր այնքան,
Եվ աշխարհը
Լավն էր այնքան,
Ո՛չ հոգս, ո՛չ բան...

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 10. ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՔԱՐԱՅՐԸ

Բոլոր ժամանակներում անձավները համարվել են լավագույն գաղտնարաններ ու պահեստներ: Ջերմաստիճանի փոքր տատանումները, բացասական իոններով հագեցած օդը, ածխաթթու գազի ու մի շարք մետաղների իոնների առատությունը և այդ ամենի հետ մեկտեղ մանրէների բացակայության զարմանալի ազդեցությունը, մարդկանց հայտնի է եղել անհիշելի ժամանակներից: Ահա թե ինչու ամբողջ աշխարհում քարայրները օգտագործվել են որպես դամբարաններ՝ հարյուրավոր, նույնիսկ հազարավոր տարիներ անվնաս պահելով այնպիսի մի դյուրաբեկ շինվածք, ինչպիսին մարդկային մարմինն է:

Այդ նույն պատճառով, ինչպես նաև արհավիրքներից զերծ մնալու համար, քարայրներում են պահվել մարդկային մշակույթի մեծագույն գանձերը՝ ձեռագրերը:

Հայաստանում անհիշելի ժամանակներից ի վեր զարգացած մշակույթ կար և կային քարայրներ, որտեղ գրվում ու պահվում էին ձեռագրերը: Ահա թե ինչու հայ քարայրագետների աշխատանքը թերի կլիներ առանց անմատչելի քարայրներում պահվող ձեռագրերի որոնման, իսկ Հայաստանի քարայրներին նվիրված ամեն մի գիրք՝ առանց ձեռագրերի շուրջը հյուսված պատմությունների:

Այդ պատմություններից առաջինը երևի սկիզբ է առել 301 թվին, երբ Գրիգոր Լուսավորիչը հրով ու սրով ոչնչացնում էր հեթանոսական մշակույթը: Ագաթանգեղոսն ինքն է խոստովանում այդ մասին.

«Ապա թագավորը իսկույն տիրաբար հրաման տվեց, ամենքի հավանությամբ, գործը երանելի Գրիգորի ձեռքը հանձնելու, որպեսզի նախկին հայրենի, հնամենի և նախնիների ու իր կողմից Աստված անվանված չաստվածները անհիշատակ դարձնի, մեջտեղից ջնջի: Ապա ինքն իսկ թագավորը, ամբողջ զորքով հանդերձ, Վաղարշապատ քաղաքից շարժվեց գնաց Արտաշատ քաղաքը, ավերելու այնտեղ Անահիտ դիցուհու բագինը և այն, որ Երազամույն կոչված տեղերում էր գտնըվում»:

Նույն ձևով կործանվում են նաև մյուս մեհյանները: Ի՞նչ էր մնում քրմերին և հեթանոսական կրոնի մյուս մոլեռանդ հավատացյալներին, եթե ոչ իրենց սըրբազան գրքերը վերցնելով փախչել, թաք-

նըվել անմատչելի լեռներում ու քարայրներում:

Հայաստանի հյուսիսում մենք մի քանի անգամ լսել ենք այդ հեռավոր դեպքերի կենդանի արձագանքները: Լոռվա ձորերում ծերունիները մեզ ցույց էին տալիս ժայռերի խճածածկ լանջերը ու պատմում, որ դրանց տակ հորատիպ քարայրներ կան, ուր Գրիգոր Լուսավորիչի ժամանակ մոլեռանդ հեթանոսները թաքցրել են իրենց սրբազան գրքերն ու քարայրները քողարկել խճի ահռելի կույտերով: Նույնիսկ մեզ համառորեն խորհուրդ էին տալիս ետ տալ խիճը ու հանել նախամաշտոցյան թաքցրած ձեռագրերը:

Թե որքանով է իրական այս ավանդությունը, չենք կարող ասել, բայց որ Լոռվա ձորերում իսկապես հորանման քարայրներ հանդիպում են, կարող ենք հաստատել:

Հաջորդ պատմությունը, որտեղ առաջին անգամ ուղղակիորեն խոսվում է քարայրներում ձեռագրեր գրելու և պահելու մասին, վերաբերում է 13-րդ դարի սկզբին: Այդ ժամանակներում իր հիմնադրած Խորանաշատի վանքում ապրում էր Վանական անունով վարդապետը: Նա իր շուրջն էր հավաքել տարբեր վայրերից ժողոված մանուկներին ու կրթում էր նրանց:

1225 թվին, երբ Ջալալեդդին սուլթանի հրոսակախմբերը ավերում են Խորանաշատի վանքը, Վանականն ու իր աշակերտները ձեռագրերը շալակելով, փախչում են Տավուշ գետի հոսանքն ի վեր ու թաքնըվում մի անմատչելի քարայրում, որը սև օրերի համար վաղօրոք փորել էր հեռատես վարդապետը:

Դժվար ժամանակներ էին, բայց Վանականը չէր հուսահատվում, որովհետև նրա հետ էին իր սիրասուն աշակերտներ Առաքելը, Հովսեփը, Մարկոսը, Սոսթենեսը, Գրիգորիսը, Պողոսը և Կիրակոսն ու Վարդանը: Ճակատագիրն այս վերջին երկուսի համար անմահություն էր նախատեսել: Նրանք Կիրակոս Գանձակեցին ու Վարդան Մեծ պատմիչներն էին, որ բազմապատկեցին իրենց ուսուցչի փառքը:

Տասնմեկ տարի Վանականն ու իր աշակերտները ճգնում էին այնտեղ, վայելելով Ոլորուտի գյուղացիների սերը: Բայց ահա 1236-ի ամռանը թաթար-մոնղոլական հորդաները կրկին ասպատակում են Տավուշ գետի հովիտը և զորապետ Մոլարն ինքն է անձամբ գալիս պաշարում Վանականի քարայրը: Քարայրում թաքնըվածների թվում էր նաև Կիրակոս Գանձակեցին, որն այսպես է նկարագրում այդ պաշարումը.

«Երբ թաթարների կողմից այս կործանումը հասավ, Մոլար Նուինը եկավ այդ սահմանները. այդ գյուղերի բնակիչները դիմեցին քարայրը: Քարայրը լցվեց տղամարդկանցով, կանանցով ու երեխաներով: Թաթարները եկան, այդ այրում նրանց պաշարեցին: Նրանք ո՛չ ուտելիք ունեին, ո՛չ ջուր. ամառային եղանակ էր ու խիստ շոգ: Սկսեցին այդ արգելարանում՝ իբրև բանտում, տապակվել: Մանուկները ծարավից պապակվում էին ու մերձիմահ էին: Թշնամիները դրսից ձայն էին տալիս, թե «Ինչո՞ւ եք մեռնում, դուրս եկեք մեզ մոտ, ձեզ համար վերակացուներ կնշանակենք ու ձեզ կթողնենք ձեր տեղերում»: Երդումով կրկնում ու երեքնում էին:

Վարդապետը իջավ նրանց մոտ՝ մեզանից երկու քահանա վերցնելով: Ապա վարդապետի հետ իջած քահանաները մեզ ձայնեցին, թե՝ «Շտապ իջեք, և, ինչ որ ձերն է, բերեք ձեզ հետ»: Մենք դողալով իջանք նրանց մոտ, ինչպես գառները գայլերի մեջ: Մեզ տարան մի շատ փոքր աղբյուրի մոտ, որ գտնվում էր վանքի մեջ, և ջուր տվին, որովհետև չափազանց ծարավ էինք...»:

Թաթարները կողոպտում են քարանձավը, հավանաբար ոչնչացնում նաև այնտեղ ժողոված ձեռագրերը և գերեվարում Վանականին և իր աշակերտ Կիրակոսին: Բարեբախտաբար հայերը փրկագնում են ուսուցչին, իսկ աչքաբաց աշակերտն ինքն է փախչում գերությունից և այդ դեպքից ընդամենը հինգ տարի անց սկսում շարադրել իր նշանավոր երկը:

1981 թվի գարնանը, երբ Հայաստանի գիտությունների ակադեմիան և Տավուշ-Ծամշադինի աշխատավորները պատրաստվում էին մեծ շուքով նշելու Վանական վարդապետի ծննդյան ութ հարյուր տարին, մեզ առաջարկեցին զբաղվել նրա քարանձավի հայտնաբերման և հետազոտման աշխատանքներով. ենթադրում էին, որ գուցե մինչև հիմա այնտեղ ձեռագրեր լինեին պահպանված: Հակառակի պես մենք այդ օրերին արշավախումբ էինք կազմակերպում Քարայծի վիհերն իջնելու համար և ստիպված էինք հրաժարվելու այդ հրապուրիչ առաջարկից: Հրաժարվեցինք, բայց այն օրակարգից դեռ չի հանվել:

# ՊԱՐՍԿԵՐԵՆԻ ԹԵՔՈՒՄՈՎ ԴՊՐՈՑ՝ ԵՐԵՎԱՆՈՒՄ

Մինչև վերջերս Երևանի 189 դպրոցներից միայն ութն էին օտար լեզվի թեքումով: Այդ բոլոր դպրոցներում էլ խորանում էին եվրոպական, աշխարհով մեկ տարածում գտած և մեզ մոտ ուսումնական պարտադիր ծրագրի մեջ մտած այնպիսի լեզուների ուսուցման մեջ, ինչպիսիք են անգլերենը, ֆրանսերենը, գերմաներենը: Հիշյալ դպրոցները սովորականներից հիմնականում տարբերվում են նրանով, որ եթե վերջիններում օտար լեզուն ուսանում են հինգերորդ դասարանից սկսած և սահմանափակվում սակավաթիվ ժամերով, ապա թեքումով դպրոցներում օտար լեզու սովորում են առաջին դասարանից և հետագայում այդ լեզվով անցնում են նաև այլ առարկաներ՝ պատմություն, աշխարհագրություն և այլն: Տարիների փորձը ցույց է տվել, որ հիշյալ դպրոցների շրջանավարտները ցանկության դեպքում ավելի հեշտությամբ են ընդունվում Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների ինստիտուտ կամ պետհամալսարանի արտասահմանյան լեզուների բաժինները:

Անցյալ տարի Երևանի լեզվական թեքումով 8 դպրոցներին ավելացավ ևս մեկը՝ իններորդը: Հակոբ Պարոնյանի անվ. №. 59 միջնակարգ դպրոցը դարձավ պարսկերենի թեքումով՝ առաջինը հանրապետությունում և հինգերորդը Միության մեջ: Բարի ավանդույթներ ունեցող այս կրթօջախը երկրորդ անգամ անընդմեջ արժանացավ ժողկրթբաժնի փոխանցիկ դրոշին, երկու տարի անընդմեջ 1400 աշակերտ ունեցող դպրոցը ցույց է տալիս հարյուր տոկոսանոց առաջադիմություն:

Պարսկերենի գծով արդյունքների մա-






Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱԾԱՅԱՆԻ

սին խոսելը դեռևս վաղ է: Տասը տարի հետո միայն դպրոցը կտա պարսկերենի խորացված ուսուցման կուրսը անցած առաջին շրջանավարտները: Բայց այսօր էլ ներկա լինելով առաջին դասարանում անցկացվող պարսկերենի դասին, հաղորդակցվելով ուսուցիչների, աշակերտների ոգևորությանը, կարելի է համոզված ասել՝ նրանք հուսախաբ չեն անի:

Մինչև անցյալ տարի դպրոցն ուներ երեք առաջին դասարան: Պարսկերենի թեքում ստանալուց հետո, առաջին դասարանները այժմ չորսն են, յուրաքանչյուրը երեսունվեցական աշակերտով: Պարսկերենի ժամերին առարկան ավելի լավ յուրացնելու, դասն ավելի արդյունավետ անցկացնելու նպատակով դասարանները բաժանվում են երեքական խմբի՝ տասներկուական աշակերտով: Ազատ ունկնդիրներին չհաշված: Զարմացա՞ք... Եվ իրավունք ունեք, չէ՞ որ ազատ ունկնդրի սովոր ենք հանդիպել բարձրագույն ուսումնական հաստատություններում, բայց ոչ միջնակարգ դպրոցի առաջին դասարանում: Բանն այն է, որ երկրորդ դասարանցիներից շատերի ծնողները պարսկերենի ուսուցչուհիներին են դիմում խնդրանքով, որ իրենց երեխաներին թույլ տան մասնակցելու դասերին և երկարօրյա խումբ են հաճախում, որտեղ պարապմունքներն անց են կացնում պարսկերենի երեք ուսուցչուհիները: Երեքն էլ ավարտել են պետհամալսարանի արևելագիտության ֆակուլտետը և որպես լավագույն մասնագետներ, համալսարանի արևելագիտության ամբիոնի երաշխավորությամբ են այստեղ աշխատանքի նշանակվել: Երկարօրյա խմբի պարապմունքները տեղի են ունենում պարսկական գրականության կաբինետում, որտեղ երեք ուսուցչուհիների և ուսմասվարի ջանքերով պարսկերեն գրքերի գրադարան է ստեղծվում:

Համալսարանի արևելագիտության ամբիոնի վարիչ Գ. Նալբանդյանի և ՄԳԳ ինստիտուտի դիրեկտոր Ս. Ղալթախչյանի օգնությամբ կազմվել են պարսկերենի դասագրքեր և դպրոցական ծրագրեր:

Ընդամենը կես տարվա ընթացքում երեխաներն այնքան բառեր են սովորել, որ ինքնուրույն կարողանում են նախադասություններ կազմել, հարցեր տալ ու պատասխանել:

ՍՏԵՓԱՆ ԶԱՔԱՐՅԱՆ

ՎԱՀԱԳՆ ՄՈՒՂՆԵՑՅԱՆ

# Մանկություն

Ի՛նչ մանկություն էր.
Դեբեդի թևն է ժայռերը լիզում,
Պաղ հորանջում են լեռները հոգնած,
Թագավորանիստ բլրի լանջերին
Ծվի են փչում երկու գառնարած:

Ի՛նչ բարձրություն էր.
Քաշալ սարերն են թև-թևի տված,
Ավելի բարձրում՝ գագաթներ ճերմակ,
Իսկ էլի բարձրում, այդպես են ասում,
Մի ժեռ կաղնի է Ծիր-Կաթինի տակ:

Ի՛նչ խելառություն.
Ծառ է կոտրվել Դեբեդի վրա—
Անցնում են նրանք՝ ծնկաչոք, ահով,
Եվ կանգ չեն առնի, թեկուզ վախեցնեն
Հավերժ մթությամբ, դժնդակ մահով:

Ի՛նչ մոլորություն.
Գնում են նրանք՝ գառները թողած,
Դեպի բարձունքի կաղնին հաստաբուն,
Գնու՜մ են, գնու՜մ՝ ձեռք-ձեռքի տված,
Քար ու քարափ է, ժայռեր հաստատուն:

Ի՛նչ Ծիր Կաթին էր.
Կանչում է, կանչում մանուկներին խենթ
Գնում են նրանք զույգ-զույգ հավատով—
Աղջիկն իսկույն տղա կդառնա,
Թե անվախ անցնի կամարի տակով:

Ի՛նչ իրիկուն էր.
Հոգնած ու մոլոր նստած վիհեզրին,
Զմայլվում էին լույսերով վարար,
Ծեկ մայրամուտ էր, նրանց թվում էր
Ցածում վառվում է աշխարհը արար:

Ի՛նչ վախ ու խռովք.
Տուն ու թաղվորով սարերը ընկած՝
Մանուկներին են փնտրում տագնապով
Նրանց մայրերը մազերը փետում
Ու վազ են տալիս Դեբեդի ափով:

Ի՛նչ ուրախություն.
Տեսան ծեր հովվին՝ գառների տեղակ
Երեխաներին առաջն է արել,
Եվ որոշեցին, որ մանկանց համար
Կորած գառները մատաղ են դառել:

# ԿԱՐՍ



ՍԵՐԳԵՅ
ՎԱՐԴԱՆՅԱՆ

Կարսի բերդը առաջին անգամ հիշատակվում է 9-րդ դարում, բայց այն հիմնադրվել է շատ ավելի վաղ, հնուց ի վեր եղել է Վանանդի նշանավոր նախարարական տան աթոռանիստը: Կարսի վերելքն ու բարգավաճումը անմիջականորեն կապված է Բագրատունյաց թագավորության ստեղծման հետ: Ունենալով ռազմական խոշոր նշանակություն, Կարսը կարևոր պատվար էր բյուզանդական և արաբական հարձակումների դեմ:

Սմբատ Բագրատունու մահից հետո Հայոց թագավոր հռչակվեց Աշոտ Բագրատունին (914—928 թթ.), որը շուտով իր աննորինակ քաջագործությունների համար նվաճեց Երկաթ պատվանունը: Նա սպարապետ նշանակեց իր հավատարիմ զինակից Գևորգ Մարզպետունուն, իսկ իր եղբորը՝ Աբասին, դարձրեց իշխանաց իշխան և կարգեց Կարս քաղաքի կառավարիչ (921—928թթ.):

Աշոտ Երկաթը մահացավ անժառանգ, ուստի թագավոր հռչակվեց նրա եղբայր Աբասը (928—953 թթ.), նա չտեղափոխվեց Շիրակավան, մնաց Կարսում և այն դարձրեց մայրաքաղաք:

Իր նոր մայրաքաղաքում Աբասը լայն շինարարություն ծավալեց: Թագավորական պալատներն ու այլ շինությունները գտնըվում էին միջնաբերդում, որի շուրջն էլ, հատկապես բլրի արևելյան լանջերին, արդեն ձևավորվել էր քաղաքի միջուկը: Աբասի շինարարական գործունեության պարծանքը Կարսագետի ափին կառուցված ս. Առաքելոց մայր եկեղեցին է:

Երբ Աշոտ Ողորմածը (953—971 թթ.) մայրաքաղաքը 961 թ. փոխադրեց Անի, Կարսի կառավարիչ նշանակվեց նրա եղբայր



Մուշեղ Բագրատունին, որը 968 թ. իրեն հռչակեց Կարսի թագավոր՝ «Թագավոր Կարուց»:

Կարսի թագավորության տարածքը շուրջ 10 հազար քառակուսի կմ էր և ընդգրկում էր ութ գավառներ, որոնցից կենտրոնականը Վանանդն էր, նրա անունով էլ երբեմն կոչվում էր Վանանդի թագավորություն: Տնտեսական տեսակետից ինքնամփոփ շրջան էր և պաշտպանված էր մի շարք ամրոցներով:

Մուշեղին հաջորդեց նրա որդին՝ Աբաս թագավորի թոռը՝ Աբասը (984—1025 թթ.):

Կարսի Աբաս թագավորին Ստեփանոս Ասողիկը այսպես է բնութագրում. «Երբ հասավ թագավորական աթոռին, դարձավ շքեղ տղամարդ, հանճարով լի իմաստուն, համարվելով իմաստունների մեջ առաջինը...»: Նա իր 45-ամյա գահակալության ընթացքում ոչ միայն խաղաղություն հաստատեց իր թագավորության մեջ, այլև վերացրեց գողությունն ու ավազակությունը, հատուկ ուշադրություն նվիրեց զինված ուժերին և նույնիսկ կարմիր գույնի հատուկ զինվորական համազգեստ մտցրեց: Բացեց բազմաթիվ դպրոցներ, ուր սովորեցնում էին նաև ռազմավարություն:

Բյուզանդիայի և վրաց Բագրատունիների միջև տեղի ունեցող արյունահեղ պատերազմների ժամանակ Կարսի թագավորությունը ռազմաբեմ դառնալով ավերածությունների ենթարկվեց:

1054 թվականին, թուրք սելջուկները Տուղրիլի գլխավորությամբ «անհամար զորքերով ու փղերով, կառքերով ու երիվարներով» հարձակվեցին Հայաստան աշխարհի վրա, շատերին սպանեցին ու գերեցին, բայց երբ հասան Վանանդի սահմանները, նրանց դեմ իր իշխանների հետ դուրս եկավ Գագիկ Բագրատունին և շատերին կոտորեց, բայց շուտով վրա հասավ թշնամու զորքի ավելի մեծ խմբավորում: Հայերը արյունահեղ կռվից արդեն հոգնել էին, իսկ ձիերը ուժից ընկել, և թշնամու թարմ ուժերին հանդիպելով՝ պարտվեցին:

Սելջուկների հեռանալուց հետո Կարսի թագավորությունը պահպանեց իր անկախությունը, բայց տասը տարի անց՝ 1064 թ. այս անգամ Ալփ Արսլանի գլխավորությամբ կրկին ասպատակեցին Հայաստանը: Գագիկ Բագրատունին իր թագավորությունը կոտորածից փրկելու համար, ինչպես Մատթեոս Ուռհայեցին է վկայում, դիմեց դիվանագիտական քայլի. սիրաշահելով թշնամուն՝ իր թագավորությունը զերծ պահեց ավերածություններից: Սակայն Գագիկ արքան, վախենալով սելջուկների հետագա հարձակումներից, 1065 թ. Կարսի թագավորությունը զիջեց Բյուզանդիայի կայսր Կոստանդին Դուկասին և փոխարենը կալվածքներ ստացավ Կապադովկիայի շրջանում: Այսպես, շուրջ մեկ դար գոյատևելուց հետո, Կարսի թագավորությունը վերացավ:

1071 թ. Մանազկերտի ճակատամարտում բյուզանդական բանակը ծանր պարտություն կրեց և կայսրությունը ստիպված եղավ թուրքերին զիջել մի շարք քաղաքներ ու գավառներ, այդ թվում և Կարսը:

1206 7 թթ. հայ-վրացական միացյալ բանակը Զաքարյան եղբայրների գլխավորությամբ պաշարեց և ազատագրեց Կարսը:

11—13-րդ դարերում Կարսը արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոն էր և կապված էր Անիի, Դվինի, Արծնի, Կարինի, Տփղիսի, Տրապիզոնի և այլ քաղաքների հետ: Ներսես Շնորհալին Կարսն անվանում է «հոյակապ քաղաք» և նշում, որ այնտեղ ապրում էին հմուտ արհեստավորներ ու վաճառականներ:



1286 թ. թաթար-մոնղոլները Չարմաղանի գլխավորությամբ արշավեցին Հայաստան և Վրաստան. գրավելով Կարսը, բնակիչների մի մասին կոտորեցին, շատերին էլ գերեվարեցին:

Լենկթեմուրի երկրորդ արշավանքի ժամանակ՝ 1394 թ., նրա հորդաները այլ քաղաքների հետ գրավեցին նաև Կարսը: Նրա մահից հետո Կարսը կռվախնձոր դարձավ Լենկթեմուրի հաջորդների ու թուրքմենական ակ-կոյունլու և կարա-կոյունլու ցեղերի միջև:

Թուրք սուլթան Սուլեյման Առաջինը Կարսը գրավեց և ամրացրեց բերդը, բայց Թահմազ շահը երկու անգամ ետ վերցնելով, քանդեց, և հետո կրկին ստիպված եղավ զիջել թուրքերին: 1555 թվականին կնքված համաձայնագրով Հայաստանը բաժանվեց Թուրքիայի և Պարսկաստանի միջև, իսկ Կարսի շրջանը հայտարարվեց չեզոք: Այս համաձայնագիրը խախտելով, 1578 թ. սուլթան Մուրադը վերականգնեց պարսիկների ավերած միջնաբերդը:

1639 թ. թուրք-պարսկական նոր համաձայնագրով Կարսը մնաց Թուրքիայի տիրապետության տակ: Բայց պարսիկները չհրաժարվեցին Կարսին տիրելու մտքից՝ 1735 և 1747 թթ. պարսից Նադիր Շահը պաշարեց քաղաքը, սակայն գրավել չկարողացավ:

17—19-րդ դարերում Կարսը համանուն փաշայության կենտրոնն էր և մտնում էր Էրզրումի վիլայեթի (կուսակալության) մեջ: Իսկ հետագայում դարձավ առանձին վիլայեթ:

Ձնայած Ղրիմի պատերազմում կրած պարտությանը, ցարական Ռուսաստանը չէր հրաժարվում իր ազդեցությունը տարածել Բալկանների և Մերձավոր Արևելքի վրա: 1877 թ. ռուս-թուրքական նոր պատերազմում Կարսի գրավումը կարող էր վճռական նշանակություն ունենալ, և կովկասյան կորպուսը հայազգի գեներալ-ադյուտանտ Մ. Լորիս-Մելիքովի հրամանատարությամբ իր գլխավոր հարվածն հասցրեց Ալեքսանդրապոլ—Կարս ուղղությամբ: Վերջապես Կարսը նվաճվեց:

Պատերազմի ավարտից հետո Ռուսաստանին միացված տարածքից ստեղծվեց Կարսի մարզ՝ Կարս, Օլթի, Արդահան և Կաղզվան օկրուգներով և ընդգրկում էր շուրջ 19 հազար քառ. կմ տարածություն: Այն կառավարում էր նահանգապետը: Կարսը դարձավ համանուն մարզի կենտրոն, զարգացավ, ավելացավ բնակչության թիվը:

Բուն քաղաքի կամ բերդաքաղաքի շուրջն էին տարածված տարբեր ժամանակաշրջաններում առաջացած Կարսի տասը արվարձանները: Դրանցից ամենամեծն ու կենտրոնականը Օրթա-կապուն էր, որը գտնվում էր միջնաբերդից հարավ ընկած հարթավայրում:

Կարսի կառուցապատման գլխավոր հատակագծով քաղաքի հետագա զարգացումը հիմնականում կապվեց այս արվարձանի հետ: Կառուցվեցին միհարկանի խանութներ, թիթեղյա տանիքներով երկհարկ և եռահարկ գեղեցիկ տներ, փողոցներում որոշ չափով անցկացվեց լուսավորություն:

Կենտրոնական փողոցները Ալեքսանդրովսկայան և Լորիս-Մելիքովսկայան էին: Առաջինում կային բազմաթիվ խանութներ, վարչական, ուսումնական, հասարակական շենքեր և բնակելի տներ: Իսկ Լորիս-Մելիքովսկայան քաղաքի առևտրական կենտրոնն էր: Բայց քաղաքի առևտուրը միայն այս փողոցով չէր սահմանափակվում: Հին, փայտաշեն, անկանոն շարված խանութներից ու կրպակներից բաղկացած նախկին շուկայի փոխարեն, կառուցվեց ուղիղ միջանցքների երկու կողմերում տեղադրված, քարաշեն խանութներով ու կրպակներով բարեկարգ շուկա:

Այս բուռն շինարարությունից անմասն չմնացին նաև քաղաքի մյուս արվարձանները: Նրանցում էլ կառուցվեցին նոր ու ընդարձակ, բարեկարգ ու գեղեցիկ տներ:

Կարսում գործում էին չորս հայկական եկեղեցի, որոնց 1915-ին միացավ նաև հինգերորդը: Կային նաև մեկական ռուսական և հունական եկեղեցիներ: Կարսն ուներ նաև «Իլյուզիոն» և «Տրիումֆ» անուններով կինոթատրոններ և քաղաքային ակումբ:



Աշխուժանում է նաև դպրոցական կյանքը: Բացվում են մի քանի պետական դպրոցներ, արական և իգական ուսումնարաններ, գիմնազիա, հայկական եկեղեցիներին կից գործում էին տղաների ու աղջիկների տարրական վարժարաններ:

Քաղաքի տնտեսական կյանքը բավական աշխուժացավ, երբ 1899 թ. ավարտվեց Թիֆլիս-Կարս շուրջ 300 կմ երկարության երկաթուղու շինարարությունը, որի վրա տարեկան աշխատում էին մոտ 10 հազար մարդ:

Հայերը զբաղվում էին առևտրով և արհեստներով, մասամբ երկրագործությամբ, անասնապահությամբ և մեղվաբուծությամբ: Կարևոր արհեստներն էին դերձակությունը, կոշկակարությունը, քարտաշությունը, հյուսնությունը, թիթեղագործությունը, պղնձագործությունը, ոսկերչությունը: 19-րդ դարի վերջերին քաղաքում կային 5 ալրաղաց, երկուական՝ աղյուսի, օճառի և գարեջրի ձեռնարկություններ, աղոցարան: Կային նաև գինու, օղու, կաշվի, կահույքի, կրի փոքր ձեռնարկություններ:



Ռուսաստանի կազմի մեջ մտնելով Կարսը ընդգրկվեց Ռուսաստանի ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական ոլորտների մեջ: 1905—07 թթ. ռուսական առաջին հեղափոխության տարիներին Կարսը Անդրկովկասի հեղափոխական գլխավոր կենտրոններից էր:

Մինչև Առաջին համաշխարհային պատերազմը շարունակում էր զարգացում ապրել Կարսի տնտեսական-մշակութային կյանքը: Այդ շրջանում մարզի 5 քաղաքներում և 85 հայկական գյուղերում բնակվում էին շուրջ 120 հազար հայեր, իսկ Կարս քաղաքն ուներ ավելի քան 12 հազար բնակիչ (մեծաքանակ կայազորը չհաշված):



Առաջին համաշխարհայինի տարիներին ևս Կարսը Կովկասյան ռազմաճակատի բաստիոններից էր, որտեղ կենտրոնացված էին հսկայական թվով ռազմական ուժեր և զինամթերք: 1917 թ. մարտին Կարսի հեղափոխականորեն տրամադրված զինվորները ապստամբեցին և ստեղծեցին զինվորների դեպուտատների սովետ: 1918-ին Կարսը գրավեցին թուրքերը և բնակչության խսկական սպանդ կազմակերպեցին: Հայերի և հույների մի զգալի մասը գաղթեց:

1919-ի ապրիլից թուրքական զորքերը էվակուացվեցին և Կարսը մտավ Հայաստանի հանրապետության կազմի մեջ: 1920 թ. մայիսյան ապստամբության օրերին Կարսը ևս կարմիր դրոշ պարզեց: Ապստամբությունը ղեկավարում էր ռազմահեղափոխական կոմիտեն՝ Ղուկաս Ղուկասյանի գլխավորությամբ: Սակայն ապստամբությունը պարտվեց և նրա ղեկավարներից շատերը սպանվեցին: Այդ շրջանում Կարսում հրատարակվում էին «Աշխատավորի ձայն» և «Դիրքերում» օրաթերթերը, իսկ մինչ այդ՝ 1917-ին՝ «Բանվոր» շաբաթաթերթը: Նույն տարվա հոկտեմբերի 30-ին թուրքերը նորից գրավեցին Կարսը, որի հայ և ռուս բնակչությունը ստիպված հեռացավ քաղաքից:

1921-ի հոկտեմբերին Անդրկովկասի հանրապետությունների և քեմալական Թուրքիայի միջև կնքված պայմանագրով Կարսի մարզն անցավ Թուրքիային:

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# «Իմաստունը»



ՆԿ. ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

Ես սկսել էի իմ ընկերների գլխին խըրատներ կարդալ և պատճառն այն էր, որ համառորեն ձեռքիցս վայր չէի դնում Վորոնցովի «Բանականության սիմֆոնիա» գիրքը: Ընկերներս ինձ ծաղրանքով «Իմաստուն» էին կոչում, և եթե երբևէ մեկին այդ բանը ապացուցելու համար փորձում էի իմ գիտելիքներր ցուցադրել, վճարում էի ավելի թանկ: Այսպես, հավաքվում էին գլխիս, և մեր դասարանի ամենաանկարգը՝ Ռուբիկը, բռնելով տղաներից մեկի օձիքը, դեմքը մոտեցնում էր ինձ ու հարցնում.

— Դե՛, Իմաստո՛ւն, ասա՛ այս հիմարին, թե ինչպիսին պետք է լինել ընկերոջ

հանդեպ, որպեսզի նա քեզ վստահի ու հավատա:

Ես կեցվածք էի ընդունում, ինձ թվում էր, թե առնվազն Ցիցերոնն եմ կամ Պլատոնը, և ցուցամատս ու միջնամատս բարձրացնելով՝ ճառում էի.

— Իսկական ընկերները երբեք իրենց ընկերության մասին չեն խոսում, նրանք չպետք է արած բարեգործությունները միմյանց երեսով տան, նրանք պետք է միմյանց նվիրված լինեն ցմահ...

Սկզբում բոլորը լռջացած լսում էին, իսկ հետո պայթում էր ծիծաղն ու անզուսպ հռհռոցը:

Երբ մեր դպրոցի ամենաչար և ուժեղ տղան՝ Ռուբիկը, որևէ «մեղավորի» ականջից բռնած քարշ էր տալիս ինձ մոտ, ես, ճիշտն ասած, նաև ինքս իմ մեջ գոռոզանում էի, թե՝ ահա տեսեք, ո՞վ եմ և իմ խրատը ի՞նչ արժեք ունի: Դառնում էի ավելի համարձակ և բառերը շուրթերիցս հորդում էին մարգարիտների պես: Ես ծույլերին խրատում էի լավ սովորել, անկարգներին՝ լինել խոնարհ, իսկ դանդալոշներին խորհուրդ էի տալիս Դանթե, Ցիցերոն ու Պլատոն կարդալ:

Գիտելիքներիս համար ուժեղներն ինձ վարձատրում էին, այսինքն՝ չէին թողնում ուրիշները մազիս դիպչեն: Այսուամենայնիվ, չէի համարձակվում աքլորանալ, նախ՝ որ արտաքինս թույլ չէր տալիս այդ և հետո՝ Ռուբիկը չէր մոռանում երբեմն-երբեմն իմ ականջին թաքուն խրատ կարդալ.

— Տե՛ս, հա՛, Իմաստո՛ւն, չփորձես քիթդ ցցել, թե չէ գիտես հա՛...

Հոգուս խորքում վիրավորվում էի, շրթունքներս բացում, որ մի իմաստախոսությամբ գոնե ինքս ինձ պաշտպանեմ, բայց ակամա հլու-հնազանդ հառաչում էի: Եվ դա հասկացվում էր որպես պատասխան՝ Ռուբիկի ասածը ինձ համար օրենք է:

Առաջինից մինչև ութերորդ դասարաններում տնօրինում էին Ռուբիկի խմբի ուժեղները: Նրանք շատ չարաճճիների ու ըմբոստների բերել էին ինձ մոտ և խրատների ենթարկելով, ինչպես հարկն է սանձերը քաշել: «Մեղավորները» այնուհետև ինձանից ոչ միայն ակնածում էին, այլև վախենում ու խորշում, և չէի կարողանում նրանց հետ ընկերություն անել: Ընկերությունս չէր հաջողվում նաև ուժեղների հետ: Այդպիսով մնացել էի մենակ: Նման վիճակը սարսափելի չէր, որովհետև, նախ մազիս դիպչող չկար, և հետո, միշտ իմ բարձր մտքերի հետ էի, Ցիցերոնի, Պլատոնի ու Դանթեի հետ: Ուժեղները երբեմն առանձին խմբով կանգնած՝ հեռվից հովանավորողի ներողամտությամբ ծիծաղում էին վրաս, իսկ փոքրահասակները մատնացույց էին անում ու խորհրդավոր գոչում.

— Իմաստունը եկա՜վ, Իմաստո՜ւնը:

Իմ միջոցով Ռուբիկը շատերից վրեժ լուծեց, ինչպես սիրում էր ասել՝ շատ փսլնքոտների հախից եկավ: Երբ «մեղավորի» երեսին ասում էի, թե իր արածը դպրոցականի վարքի կանոնների կոպիտ խախտում է, տպավորության համար ընտրում էի հնչեղ դարձվածքներ, մեջբերումներ անում փիլիսոփաներից: Ռուբիկը դիմում էր նրան և մեզ շրջապատած տղաներին.

— Եթե Իմաստունն է ասում, որ այս փսլնքոտի արածը պատժի է արժանի, ուրեմն նրան ի՞նչ պետք է անել...

— Խրատել ինչպես հարկն է,— եզրակացնում էր մեկը:

— Բուրդը քամուն տալ,— լրացնում էր երկրորդը:

Եվ դատաստանն արվում էր տեղնուտեղը, իմ ներկայությամբ:

Հերթը Արամին հասավ: Նա ուրիշ դպրոցից էր եկել և սովորում էր իններորդ դասարանում: Բարձրահասակ էր, վտիտ, ակնոց էր կրում և հենց այդ հանգամանքը չարացնում էր Ռուբիկին: Մի ուրիշ պատճառ էլ կար. Ռուբիկը ցանկանում էր բարձր դասարաններում էլ իշխանություն հաստատել, հենց Արամից էլ սկսեց:

Մի օր, երբ ես իմաստունի խոհեմությամբ գլուխս կախ, ինչ-որ փիլիսոփայի մտքեր հոլովելով, տուն էի գնում, ետևիցս ձայն տվեցին.

— Է՛յ, Իմաստո՛ւն, կանգնի՛...

Շրջվեցի: Ռուբիկը ուրիշ չորս տղաների հետ դեպի պատի անկյունն էր քարշ տալիս իններորդ դասարանի բարձրահասակ ակնոցավորին: Վերջինս փորձում էր թևերն ազատել, ասելով, որ ինքը չի վախենում և ահա գալիս է, բայց ո՞վ էր նրան լսողը:

Մոտեցան, կանգնեցին իմ դիմաց և Ռուբիկը հարցրեց.

— Իմաստո՛ւն, ապա հիշիր, ի՞նչ է ասել քո այդ Ցիցերոնը...

Ես անակնկալի եկա: Սովորաբար նախ թվարկում էին «մեղավորի հանցանքները» և ըստ դրա կողմնորոշվում էի, թե որ փիլիսոփայից կամ իմաստունից մեջբերում անեմ:

— Ցիցերոնը,— կմկմացի,— Ցիցերոնն ասել է...

Ռուբիկը երեսիս բղավեց.

— Հիմա՛ր, Ցիցերոնը չի՞ ասել, որ սրա նման փսլնքոտի մռութը պետք է ջարդել։

Արամը ցուցամատը տարավ աչքերին, ակնոցն ուղղեց, հավանաբար զգալով, որ Ցիցերոնը այս պահին իր ոխերիմ թշնամին է։ Ես ինձ վատ զգացի, և այդ շոգին ճակատս սառը քրտինքով պատեց։ Հասկացա, որ Ցիցերոնի ոչ մի բառը չի փրկելու ո՛չ ինձ, ո՛չ ակնոցավորին։

— Իսկ ինչի՞ համար,— համարձակվեցի հարցնել և զգացի, որ ոտքերս դողում են։

— Դե կորի՛ր, փսլնքոտ վախկոտի մե՛կը, քանի քո մռութն էլ չենք ջարդել,— ուսիս հարվածելով բղավեց Ռուբիկը, և սկսվեց մի չտեսնված տուրուդմփոց, որին ակամա մասնակցեցի նաև ես։ Ակնոցավորի հետ գազազած հարվածում էինք ում պատահեր և կարծեմ ակնոցավորն ինքն էլ իր կամքից անկախ ինձ մի քանի հարված հասցրեց։ Դա այն տուրուդմփոցն էր, որից ես միշտ վախենում ու խուսափում էի։ Մենք լավ ջարդ կերանք, հետո, երբ անցորդները միջամտեցին, ամեն մեկս փախանք մեր տները։

Այդ դեպքից հետո երկու օր դպրոց չգնացի։ Վախենում էի Ռուբիկից և ավելի շատ «մեղավորներից», որոնք, գիտեի, անհամբերությամբ սպասում էին, որ ինձնից վրեժ լուծեն։ Այդպես էլ եղավ։ Շաբաթվա վերջին հայրս ինձ ուժով ու սպառնալիքով դպրոց տարավ։

Դասամիջոցներին ոչինչ չպատահեց, բայց տուն վերադառնալիս ինձ կանգնեցրին.

— Է՛յ, Իմաստո՛ւն։

Շրջվեցի ու արտաբերեցի ակամայից.

— Ո՞վ է...

— Մեղավորները,— լսվեց չարացած պատասխանը։

Եվ նույն պահին խումբը շրջապատեց ինձ։ Հարվածում էին մեջքիս, ոտքերիս և մշտապես լսում էի նույն ձայնը.

— Ահա թե ինչ են ասել Ցիցերոնը, Պլատոնը, Դանթեն...

Մի քանի օրից հետո հայրս ինձ ուրիշ դպրոց տեղափոխեց։ Այստեղ ես իմաստուններին թողի մի կողմ և աշխատում էի մտերմություն հաստատել դասարանի մեղավոր ու ամենը համարվող բոլոր տղաների ու աղջիկների հետ։



**ՏԻԳՐԱՆ ԲԱԴԱԼՅԱՆ**

# ՆԱԽԱՏԻՊԸ ՋՈՒՆԵՑՈՂ ԿԱՌՈՒՅՑ

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ



Զարմանալի համերաշխությամբ կռունկներն այս գարնանից իջել էին Ծիծեռնակաբերդի փեշերին և իրենց երկաթե կտուցներով շրջապատել Երևանում կառուցվող մարզահամերգային համալիրը: Աշնանային այս օրերին համալիրի առաջին հերթի շինարարությունն արդեն ավարտվել է, բայց կռունկները չեն չվել: Մարզական դահլիճի հարեվանությամբ շարունակվում է ոչ պակաս ուշագրավ համերգային սրահի շինարարությունը:

Ճարտարապետական ինքնատիպ լուծումներով եզակի այս կառույցի չափերի մասին ընդհանուր պատկերացում տալու համար ասենք, որ միայն տանի բետոնապատ ծածկատարածության մակերեսը կազմում է շուրջ 17 հազար քառակուսի մետր: Իր ամբողջության մեջ համալիրը հիշեցնում է երեքնուկի հսկայական թերթիկներ, որի երկաթբետոնե ճիստերի տակ ամփոփված են մարզական և համերգային դահլիճները: Սպորտային դահլիճը, որը շահագործման հանձնվեց բոլորովին վերջերս, ի վիճակի է տեղավորել ավելի քան չորս հազար հանդիսատես: Այդ թիվը հարաբերական է, քանի որ դահլիճի կառուցվածքային յուրահատկությունն այնպիսին է, որ պտտվող տրիբունաների շնորհիվ հարկ եղած դեպքում նստելատեղերի թիվը կարելի է ավելացնել ևս երկու հազարով: Նույն սկզբունքով նստելատեղերի քանակը հնարավոր կլինի ավելացնել նաև դեռևս անավարտ համերգային դահլիճում:

Դեպի համալիր տանող գլխավոր ուղին սկիզբ է առնում Լենինգրադյան փողոցից, որտեղ տեղակայվող ստորգետնյա շարժասանդուղքները հանդիսատեսին անմիջականորեն կհասցնեն մարզադահլիճի մուտքի մոտ: Այնտեղ կարելի է հասնել նաև երկկողմանի սանդուղքներով ու միաժամանակ ճանապարհին հիանալ դրանց միջակայքում գտնվող գեղատեսիլ շատրվաններով և եռաստիճան սանդղաջրվեժով: Հենց այս ճանապարհով հազարավոր երևանցիներ և բազմաթիվ հյուրեր հոկտեմբերի 22-ին առաջին անգամ բարձրացան մարզապալատ և մասնակից եղան տոնական մեծ համերգին, որն, ի պատիվ շինարարների, կազմակերպվել էր այստեղ: Դա միաժամանակ յուրօրինակ նախերգանք հանդիսացավ Էրեբունի—Երևան տոնահանդեսի համար, որը հետագա օրերին անցկացվեց մեր հանրապետության մայրաքաղաքում: Համալիրի շինարարներին ողջունելու եկած հանրաճանաչ արտիստների հետ հանդես եկան նաև Երևանի գիշերօթիկ երաժշտական դպրոցի փողային նվագախումբը և «Արևիկ» մանկական վոկալ-գործիքային անսամբլը:

Այո ,երևանյան «Ոսկե աշուն» տոնակատարության ազդականչերը առաջին անգամ հնչեցին Ծիծեռնակաբերդում կառուցված մարզահամերգային համալիրի կամարների տակ և այդ հոյակապ կառույցի բացումը նշանավորվեց երգ ու ծիծաղով: Հայ շինարարների ստեղծած այդ անկրկնելի կառույցը, որը մի յուրօրինակ նվեր էր Երևանի հիմնադրման 2765-ամյակի պատվին, այսուհետև մարզիկների համար կհանդիսանա հույսերի և հաղթանակների ասպարեզ, սպորտային տարբեր միջոցառումների անցկացման մըրցաբեմ:

Թող հաղթական կամարների տակ թևածի մարզական բերկրանքը...




Առաջադրանքները դըժվար էին: Կարենը երկար չարչարվեց և վերջապես մեկը լուծեց:

Քիչ հետո ներս մտավ ընկերը՝ Արամը և ասաց.

— Կարե՛ն, եկել եմ շախմատ խաղալու:

— Բայց ես... ես չեմ կարող... խնդիրները չեմ լուծել:

— Դու կարող ես երեկոյան էլ լուծել: Եկ խաղանք:

— Չեմ կարող, Արա՛մ, պետք է խնդիրները լուծեմ:

— Չե՞ս ուզում ինձ հետ խաղալ, դե լավ,— նեղացավ Արամն ու գնաց:

Կարենը շարունակեց պարապել: Վերջին խնդիրն էր լուծում, կրկին ներս մտավ Արամը.

— Կարե՛ն, խնդիրները լուծեցի՞ր:

— Վերջինն է մնացել, չեմ կարողանում լուծել:

— Ես էլ չկարողացա վերջինը լուծել,— ասաց Արամը, —դե լավ, այդ մեկն էլ թող մնա, արի խաղա՛նք...

Կարենը չկարողացավ այս անգամ դիմադրել, տետրերը թողեց մի կողմ, շախմատի տուփը բերեց, սկսեցին խաղալ:

Առավոտյան, մաթեմատիկայի դասին, երբ Կարենը ստիպված եղավ ուսուցչուհուն խոստովանել, որ վերջին խնդիրը չի լուծել, Արամը տեղից վեր թռավ և բացականչեց.

— Ես լուծել եմ:

Կարենը զարմանքից քարացավ:

ՆԱՐԻՆԵ ՂՈՒԿԱՍՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջանի
Նոր-Կեսարիայի դպրոց,
6-րդ դասարան




Ամառային արձակուրդներին մորս հետ աշխատում էի մեր կոլտնտեսությունում: Հատկապես սիրում եմ բերքահավաքի շրջանը: Բերքահավաքի օրերին մենք՝ դպրոցականներս, բոլորս մի մարդու նման գնում ենք դեղձ ու խաղող քաղելու: Եռուզեռի մեջ է ամբողջ գյուղն ու մեր դասարանը: Մի կողմից տղաների կատակները, մյուս կողմից աղջիկների երգն ու ծիծաղը ուժ ու եռանդ են տալիս բոլորին: Երեկոյան, աշխատանքային օրվա վերջում, չենք ուզում բաժանվել, կարծես բոլորս մի մեծ, համերաշխ ընտանիք լինենք: Երբ ավարտվում է բերքահավաքը, անցնում ենք մյուս կարևոր աշխատանքին՝ խորդենի կըտրելուն:

Կոլտնտեսությունը հիմնականում զբաղվում է խաղողագործությամբ և խորդենագործությամբ: Եթե ժամանակին աշխատանք չըտարվի, բերքը կփչանա: Այդ պատճառով մեր՝ աշակերտներիս օգնությունը անհրաժեշտ է:

ԱՆԱՀԻՏ ԱՆՏՈՆՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջան,
գ. Նալբանդյան, 9-րդ
դասարան

Քույրս ինձանից մեծ է վեց տարով: Սովորում է Գորիսի մանկավարժական ինստիտուտում, ուսման գերազանցիկ է: Երբ տուն է գալիս, ինձ համար տոն է: Նստում ենք ու մտերմորեն զրուցում: Նա իմ ամենալավ խորհրդականն է:

Հայրս սիրում է երաժըշտություն և ամեն անգամ որևէ տեղ գնալիս քրոջս ու ինձ համար մի կույտ ձայնապնակներ ու ձայնագրություններ է բերում: Մեզ հետ շատ ընկերական է, զրուցում ենք գրքերից, նոր ֆիլմերից, էստրադայի աստղերից: Կատակասեր է հայրիկս, նա մեր ընտանեկան մթնոլորտը շատ աշխույժ է պահում: Նրա հետ երբեք չես տխրի: Ես մտածում եմ՝ երևի նրան մանկավարժությունն է օգնում ճիշտ հասկանալ մեզ:

Մեր ընտանեկան ամբողջությունը լրացնում է իմ բարի մայրիկը: Նա մի քիչ ավելի խստապահանջ է և սիրում է, որ կատարենք իր պատվերները: Հյուրասեր է. ով էլ լինի, եթե հյուր է, ուրեմն հարկավոր է պատվով ընդունել, հյուրասիրել: Նրա շնորհիվ մեր բնակարանը բուրում է մաքրությամբ ու հաճելի է:

Մեր ընտանիքն ուրախ է, կատակն օգնում է ավելի լավ հասկանալ միմյանց: Ես կարծում եմ, որ մեր ընտանիքը երբեք չի կորցնի իր ուրախ ու խաղաղ ընթացքը:

ԼՈՒՍՅԱ ՍԱՐԳՍՅԱՆ
Եղեգնաձորի № 3 միջն. դպրոցի 8-րդ դասարան

Հարգելի խմբագրություն, երկար ժամանակ է, մեր շենքում ջուր չկա, և եղբայրըս ու քույրս ամեն օր գընում են հեռվից ջուր բերում: Առիթից օգտվելով, որ տան փոքրն եմ, ջուր բերելու պարտականությունից ինձ ազատ էի համարում: Դպրոցից գալիս, հաց էի ուտում, հետո դասերս պատրաստում, հետո շախմատ, լոտո և շաշկի խաղում: Եվ երբ դրանցից հոգնում էի, հեռուստացույց էի դիտում, ի՛սկ երեկոյան էլ գնում էի բակում խաղալու: Մի անգամ, երեկոյան, քույրս և եղբայրս էին բակում խաղում, տանը մենակ էի, երբ մայրս եկավ:

— Վարդա՛ն ջան, գնա ջո՛ւր բեր, որ ճաշ եփեմ, — ասաց:

— Դա իմ գո՞րծն է, որ անեմ, —հրաժարվեցի ես:

Մայրս առանց որևէ խոսք ասելու վերցրեց դույլը և գընաց ջուր բերելու: Նրա գընալուց հետո ես փոշմանեցի, որ չլսեցի մայրիկիս: Հետո՞ ինչ, որ տան փոքրն եմ: Ես էլ եմ տան անդամը, ես էլ պետք է տանն օգտակար լինեմ: Այդ դեպքից հետո ես ջուր էլ եմ բերում և ձեռքիցս եկած ամեն գործ անում եմ:

ՎԱՐԴԱՆ ԲԱՐՍԵՂՅԱՆ
Ապարան

ՓԱՌԱՆՁԵՄ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ԿԱՐՈՏ

Վաղորդյան ցողե՛ր...
Բոբիկ վազեի ես ձեր վրայով,
Մայրիկս կանչեր՝ աղջի՛, կմրսե՛ս,
Ես չկանգնեի, վազեի էլի.
Կարոտել եմ ձեզ...

Քարուքարափնե՛ր...
Կախվեի նորեն ձեր պռունկներից,
Մայրս սարսռար՝ ամա՛ն, աղջի՛կս,
Իսկ ես քաջորեն մագլցեի վեր.
Կարոտել եմ ձեզ...

Ծնկշնկան հովե՛ր...
Գանգուր մազերս խառնեիք էլի,
Մայրս սաներ ու տեսքի բերեր ինձ,
Ես քրքջայի, լեզու հանեի.
Կարոտել եմ ձեզ...

Այգաբացերի ծիրանի շողե՛ր,
Լեռան գագաթի վառ-կապույտ ցոլքեր,
Աստղակաթոցի գիշեր ամառվա,
Ծաղկաբույր դաշտեր, ձորեր գաղտնապահ,
Եվ մայրիկ, մայրիկ՝ սինձոտ գոգնոցով.
Կարոտել եմ ձեզ, կարոտել եմ ձեզ...



## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Ամերիկացի ճանապարհորդ Ներման Ռեգաստերսը կոնգոյան ջունգլիներում մագնիտոֆոնով ձայնագրել է մինչև այժմ անհայտ գազանի մռնչոց...

Հենց իր՝ ճանապարհորդի վկայությամբ, նա սեփական աչքերով տեսել է այդ հըսկայական սողունին, որի երկարությունը ավելի քան 10 մետր է և արտաքինով շատ նման է 60 միլիոն տարի առաջ մահացած դինոզավրերին։

Ռեգաստերսը հայտնի է լրագրողներին. նա ինքը, և 1981 թվականին կազմակերպված արշավախմբի մյուս անդամները կոնգոյան ջունգլիների Տելե լճի դժվարանցանելի շրջանում 82 օրվա ընթացքում հինգ անգամ տեսել են այդ անհայտ կենդանուն և նրա մռնչոցը ձայնագրել մագնիտոֆոնով։ Նա միաժամանակ նշեց, որ XVII դարից սկսած մի քանի հետազոտողների օրագրերում, որոնք եղել են այդ խուլ վայրերում, հիշատակություններ են հանդիպում այն հսկա հրեշի մասին, որը ոչ այն է փիղ, ոչ այն է սողուն է հիշեցնում։

Ճանապարհորդը «դինոզավրի» ձայնագրությունը տվեց Կալիֆոռնիայի գիտնական Քենթ Թեմփլինին, որը մաքրեց այն օտար աղմուկներից և կոմպյուտերային սարքավորման օգնությամբ համեմատեց ջունգլիներում բնակվող աֆրիկյան խոշոր կենդանիների՝ փղերի, գորիլաների, գետաձիերի և բազմաթիվ այլ կենդանիների ձայների հետ։ Թեմփլինը եկավ այն եզրակացության, որ ձայնագրած ձայները պատկանում են մինչև այժմ անհայտ արարածի։

Ռեգաստերսը պատրաստվում է իր խըմբով մի նոր արշավ կազմակերպել դեպի Տելե լիճը, որպեսզի նոր ապացույցներ գտնի իր հայտնաբերած «դինոզավրի» մասին։

Կահիրեից 100 կմ հեռու գտնվող Էլ-Ֆայում օազիսը գիտնականների առջև բացեց Եգիպտոսի հնագույն պատմության նոր գաղտնիքներ։

Այստեղ անցկացվող հնագիտական աշխատանքների ժամանակ բացահայտվեցին տարբեր չափերի 22 հնագույն դամբարաններ։ Դրանք կառուցված են եղել մանրակրկիտ կերպով մշակված հըսկայական գրանիտե սալերից, որոնց վրա գրված են թաղվածների անունները։

Գիտնականները հայտնաբերեցին մեծ քանակությամբ մարմարյա արձանիկներ, հայելիներ, որոնք զարդարված են թանկարժեք մետաղներով, ամանեղեն, ինչպես նաև պղնձյա թիթեղներ և ջորսուներ, որոնք հնում ծառայել են որպես փողի համարժեք։ Մեծ հետաքրքրություն էին ներկայացնում պղնձից պատրաստված չքնաղ սկահակները և տարբեր ձևեր ունեցող սրվակները, որոնց վրա փորագըրված նկարներն ու հիերոգլիֆները պատմում են եգիպտացիների կապերի մասին հեռավոր Նուբիայի, Սիրիայի և Կրետե կղզու հետ։

Այս հայտնագործությունները վկայում են, որ դամբարաններում թաղված են եղել XII դինաստիայի Ամենեմհետ 3-րդի աչքի ընկնող քրմերը։ Ամենեմհետ 3-րդը թագավորել է 4 հազարամյակ առաջ և նրա տիրակալության ժամանակ հին եգիպտական պետությունը ծաղկում է ապրել։ Այդ ժամանակահատվածում Եգիպտոսի մայրաքաղաքը եղել է Ֆայումը, որը Նեղոսի հետ կապված էր ջրանցքով։ Այստեղ կառուցվել է հանրահայտ Ամոնի տաճարը և լաբիրինթոսի շենքը, որտեղ կային ավելի քան 3 հազար սենյակներ։

Իտալացի մեխանիկ Ալբերտո Տոպին պատրաստել է արեգակնային էներգիայով աշխատող ավտոմեքենա։ «Ֆերարի» հին մոդելի ավտոմեքենայի թափքին հարմարեցնելով էլեկտրաշարժիչը, որը հենց իր գյուտարարի խոսքերով ասած հիշեցնում է լվացքի մեքենայի շարժիչ։ Սնումը ապահովվում է երկու նիկելային խտացուցիչներով։ Դրանք լիցքավորվում են արեգակնային մարտկոցներից ստացվող էլեկտրաէներգիայի հաշվին։ Արեգակնային ավտոմեքենան կարող է զարգացնել ժամում մինչև 95 կիլոմետր արագություն։

Հանձնված է արտադրության 27.08.83 թ.։ Ստորագրված է տպագրության 28.10.83 թ.։ ՎՖ 06977, Թուղթ օֆսեթ, 70×100 1/16, Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 69562։ Պատ. 2034։ Գինը՝ 15 կ.։

Сдано в набор 27.08.83 г. Подписано к печати 28.10.83 г. Формат 70×100 1/16. ВФ 06977. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 9,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 69562. Заказ 2034. Цена 15 коп.



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

## ԺԱՄԱՆՑ

Զամբյուղում եղած խնձորները հարկավոր է բաժանել երեք քույրերի միջև հետևյալ կերպ. մեծ քրոջը պետք է տալ զամբյուղում եղած խնձորների կեսը և մեկ խնձոր, իսկ միջնեկ քրոջը՝ մնացած խնձորների կեսը և նորից մեկ խնձոր։ Փոքր քրոջը պետք է տալ մնացած խնձորների կեսը և 3 խնձոր, որից հետո զամբյուղը կդատարկվի։

Քանի՞ խնձոր կար զամբյուղում մինչև բաժանելը։

- Խաչիկն ասում է Հրաչիկին.

— Հրաչի՛կ, տուր ինձ 1 ռուբլի և մեր դրամները կհավասարվեն։

— Ո՛չ,— ասում է Հրաչիկը,— ավելի լավ է դու ինձ 1 ռուբլի տաս և այն ժամանակ իմ դրամը քոնից 11 անգամ ավելի կլինի։

Որքա՞ն դրամ ունեին Խաչիկն ու Հրաչիկը առանձին-առանձին։

- Այս եռանկյան վրայի շրջանակներում հարկավոր է 1—9-ը թվերը դասավորել այնպես, որ յուրաքանչյուր կողմի 4 թվերի գումարը հավասար լինի 20-ի։

Առաջարկները՝ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

### ՊԻՈՆԵՐ № 8-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Ամսվա վերջին՝ 30-րդ օրը, հարուստը ստանում է «երկնքից թափված» 3 միլիոն ռուբլին, մինչդեռ առաջին հայացքից պարզ ու ձեռնտու թվացող գործարքի համար, որը սկսվեց 1 կոպեկից, հարուստը վճարեց... 10 միլիոն 737 հազար ռուբլի 23 կոպեկ։





ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015. Ереван-15. ул. Кармир банаки. № 15.

